


## ՔՈ ՆՈՐ ՏԱՐԻՔԸ

*ԹԱԹՈՒԼ ԲՈԼՈՐՋՅԱՆ*

Իմ նո՛ր Հայաստան,
Հիսուն տարեկան ես՝
Բացված այգեստան ես,
Այգաբացի գրկում։
Հոկտեմբերից առաջ
Ազատության մի հուր,
Թե նա չգար հանկարծ,
Կմնայիր տխուր։
Նա քեզ արև տվեց,
Հզորություն ու կանչ
Եվ նոր անծրև բերեց
Քո պտերին կանաչ։

Մեր այսօրվա երգը
Քո սրտից է գալիս,
Դու ես թևեր տալիս
Եվ ասում ես՝ թռեք։
Քո հին ցավերն անցան,
Աշխա՛րհ իմ վիրավոր,
Քեզ նոյեմբերն հասավ
Դժվար ճանապարհով։

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ



# ԱԶԱՏԱՐԱՐ ԲԱՆԱԿԻ ՀԵՏՔԵՐՈՎ

*ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ*

Այս արտասովոր ճանապարհորդությունը եկեք միասին կատարենք:

Այն սկսվում է Ղազախից, որի կենտրոնական հրապարակում բարձր-բարձր բոցկլտում է հավերժական կրակը: Դա բարեկամության կրակ է: Այստեղ են միանում Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի կենտրոնական ուղիները: Եթե մենք շարժվենք դեպի հարավ, քիչ անց կհայտնվենք Հայաստանում, որտեղ օձի նման գալարվում է աղմկոտ Աղստևը: Դարավոր անտառները լեռներից գահավիժելով ցած, ընդհուպ հասնում են նրա ափերը, որպեսզի կսպեն գետի խենթ կատաղությունը: Եթե մենք գիշերը քայլենք նույն ճանապարհով, կլսենք, թե ինչպես են անտառում ոռնում գայլը, արջը, լուսանը, սուլոցով իրար ձայն են տալիս բազեն ու արտույտը: Իզուր չէ, որ դարեր առաջ, այս նույն խճուղով Հայաստան են ներխուժել Ջալալ-էդ-դին շահը, Լենկ-Թեմուրը, Շահ Աբասը և ուրիշ շատ տիրակալներ: Նրանք բոլորն էլ ցանկանում էին ստրկացնել մեր ժողովրդին, նվաճել այս գեղեցիկ վայրերը: Բայց սպասեք, ի՞նչ աղմուկ է: Դուք լսո՞ւմ եք սմբակների դոփյուն, կենքերի շաչոց, ռազմի խրոխտ երգեր: Խճուղով հաղթական քայլում են ռազմիկների կանոնավոր շարքերը, որոնք պոպոզավոր գլխարկներ ունեն, հնգաթև կարմիր աստղեր: Սա լեգենդար 11-րդ Կարմիր բանակն է, միակ բանակը, որ մեր երկիրն է մտել ոչ թե մեզ ստրկացնելու, այլ ազատագրելու համար: Տեսնո՞ւմ եք, թե սարերից ժողովուրդը ինչպես է սուրում ցած, գրկախառնվում, աղ ու հաց մատուցում իր ազատարարներին:

1920 թվականի նոյեմբերի 29-ն է:

Ժամը չորսին բանակի կորամասերը հաղթական մտնում են Իջևան: Նրանք կոտրում են բանտի դարբասները, ազատում կալանավորներին և կալանավորում նրանց, ովքեր երեկվա տերերն էին: Հետո հեղկոմի անդամները հավաքվում են մի փոքրիկ տնակում, և Սարգիս Կասյանը ճրագի լույսի տակ կարդում է այն կոչը, որով Հայաստանը հռչակվում է խորհրդային: Իջևանից թռչում է լուրը Մոսկվա՝ Լենինին: Բայց Կարմիր բանակի մարտիկները չեն հասցնում կարդալ Լենինի պատասխանը, որովհետև հաջորդ առավոտ վաղ դուրս են գալիս Իջևանից: Աղստևի կիրճում մշուշ էր ու բուք: Խելագար քամին պտտեցնում էր ձյան խոշոր փաթիլները ու արձանագործի պես ծեփում մարտիկների դեմքին: Ռուս զինվորները սովոր չէին այդպիսի լեռնային եղանակի: Հայ կամավորները, որոնք դեռևս Բաքվում միացել էին 11-րդ բանակին և շատ լավ գիտեին ճանապարհը, ամեն կերպ օգնում են նրանց: Մի քանի ժամ քամու և ձյան դեմ կռվելուց հետո, հեռվում՝ սարի լանջին նշմարվեց մի մեծ խարույկ: «Մերո՞նք են, թե՞ թշնամիներ»,— մտածեցին զինվորները ու, չնայած սառել էին, պատրաստվեցին ճակատամարտի: Քիչ առաջ գնալով, նրանք նկատեցին մի խումբ զինվորների, որոնք զենքերը նետել էին խճուղու մեջտեղ ու քաշվել մի կողմ:

— Մենք նախկին հայկական բանակի մարտիկներն ենք,— ասացին նրանք,— մենք չենք ուզում կռվել մեր ազատարարների դեմ:

— Իսկ այս ի՞նչ խարույկ է,— հարցրին կարմիրբանակայինները:

— Դա Ջարխեչ գյուղն է: Խեղճ գյուղացիները լուցկի չունեն կրակ վառելու համար, նրանք խարույկ են վառել, որ առավոտները կարողանան կրակ տանել իրենց օջախների համար:

Ամբողջ գյուղը հավաքվեց, երբ Կարմիր բանակը խճուղով ներս մտավ ու կանգնեց հրապարակում: Զինվորական համազգեստի և պոպոզավոր գլխարկների մեջ ջարխեչցիները ճանաչեցին իրենց համագյուղացիներից մեկ-երկուսին, որոնց վաղուց մեռած կամ սպանված էին կարծում:

— Մի՛ վախեցեք, մոտեցե՛ք,— հորդորում էին նախկին համագյուղացիները,— ռուս զինվորները լավ մարդիկ են, նրանք հարյուրավոր կիլոմետրեր են կըտ-



Սարգիս Կասյան

ըել մեկ օգնելու համար:

Կամաց-կամաց գյուղացիների կասկածը փարատվեց: Երեկյան նրանք զինվորներին իրենց տները տարան, պառկեցրին ամենափափուկ անկողիններում և տվին ամենահամեղ պատառները: Մի գիշերում անծանոթ, իրար լեզու չհասկացող մարդիկ դարձան հարազատներ, սրտակից բարեկամներ: Իհարկե, եթե հիմա նույն զինվորները հայտնվեն Զարխեչում, չեն ճանաչի իրենց գիշերած գյուղն ու հյուրընկալողներին: Ոչ միայն այն բանի համար, որ գյուղը հիմա Կույբիշև է կոչվում, այլ որովհետև փլատակներ հիշեցնող վայրը դարձել է այգիների մեջ թաղված մի փոքրիկ մրգաստան, որի գետնափորները վերածվել են բազմահարկ առանձնատների, կահավորված շքեղ կահույքով, հեռուստացույցով, սառնարանով, լվացքի, կարի մեքենաներով:

Մարտիկների ուղին գնալով դժվարանում է: Չնայած մինչև ծնկները հասնող ձյանը ու փայտացնող բքին, նրանք երգելով ու կատակելով շարժվում են դեպի Դիլիջան: Հանկարծ մշուշի միջից որպես արձագանք լըսվում է «Ինտերնացիոնալի» հաղթական հնչյունները: Հայ զինվորները շփոթված նայում են իրար: Առաջին անգամ է Հայաստանի երկնքի տակ հնչում «Ինտերնացիոնալի» խրոխտ երաժշտությունը: Ո՞վ է այս հեռավոր լեռների գիրկը հասցըրել բանվորական քայլերգի մեղեդին: Զինվորները չըթաքնված հիացմունքով են նայում քաղաքի մուտքի մոտ կանգնած 15—16 տարեկան տղաներին, որոնք չնայած ճքճքան ցրտին, նվագում են սառած գործիքների վրա: Նրանք ուզում են նոր երաժշտությամբ դիմավորել նոր կյանքի մունետիկներին: Քիչ անց աղ ու հացով մոտ են գալիս դիլիջանցիները, կրծքներին՝ կարմիր ժապավեններ, սրտներում՝ անսահման ցնծություն: Ամենից շատ նրանք են ուրախ Կարմիր բանակի մուտքի համար, որովհետև ամենից շատ նրանք են տառապել: Դիլիջանում էր, որ դավադրաբար սպանվեց ապստամբ-հեղափոխականների հրամանատար Հակոբջանյանը, և նրա դիակը մի քանի օր փողոցում ընկած մնաց, որովհետև վախից ոչ ոք չէր համարձակվում մոտենալ: Դիլիջանի անտառում գնդակահարեցին ամենառոմանտիկ հեղափոխականին, 24-ամյա Ենոք Մկրտումյանին, որի վերջին ճիչը խառնվեց դահիճների հրացանազարկին.

«Մենք արդար ենք: Մենք կհաղթենք: Կեցցե՜ կոմունիզմը»:

Դիլիջանից սկսվող 13-ից ավելի ոլորանները, որոնք հասնում են լեռան գագաթը՝ մինչև 2140 մետր, լրիվ սառցակալել են: Դժվար, շատ դժվար է այդ ճանապարհը հաղթահարել հետիոտն կամ հոգնած ձիերով, որոնք հազիվ են տանում ռազմամթերքն ու զենքերը: Ստեղծվում է զինվորական հատուկ ջոկատ, որը բքի ու սառնամանիքի մեջ պետք է մաքրի խճուղին մինչև ծնկները հասնող ձյան շերտից:

Բայց հայ մարտիկները անհամբեր են, նրանք ուզում են ժամ առաջ հաղթահարել լեռնանցքը, օգնության հասնել բանտերում տառապող իրենց ընկերներին: Դրա համար նրանք որոշում են սվիններով ջար-



Կարմիր բանակի մուտքը Երևան

դել սառույցը ու կարճառոտներով վեր բարձրանալ:

Կարճառոտները... Դա մի այնպիսի թեք ու վտանգավոր ուղի էր, որ եթե մեկնումեկը սայթաքեր, միայն անդնդի խորքում կանգ կառներ: Դրա համար զինվորները բարձրանում էին միմյանց հրացանից պինդ բռնած, երբեմն գոտիներով կապում իրար:

Դեկտեմբերի 4-ի առավոտյան մարտիկների աչքի առջև ծփաց Սևանա լիճը: Կարմիրբանակայինները նավակ նստեցին և թիավարելով կղզի հասան: Նրանք ազատագրեցին քաղաքական բանտարկյալներին, որոնք փակված էին վանքում, մի քանի վայրկյան հիացան Սևանի կապույտով ու... շարունակեցին ճանապարհը: Երբ բլուրի վրայից նրանց հայացքը վերջին անգամ հանդիպեց Սևանին, ոչ մեկի մտքով չանցավ, որ մեկ-երկու տասնամյակ անց իրենց կանգնած տեղը կլինի աշխարհի տեսարժան վայրերից մեկը:

Նրանք արդեն մոտեցել են Ախտային: Ամենուր ավերակներ, զարշահոտություն, անթաղ դիակներ: Մարդ չի երևում: Միայն մերթընդմերթ ճռռում է մի դուռ, շեմքին հայտնվում է մի կմախքացած կերպարանք ու իսկույն անհետանում: Գյուղացիներից թալանել են իրենց վերջին փշրանքները: Շատերը անկողին անգամ չունեն, որ քնեն: Բացի դրանից տիֆն ու մյուս վարակիչ հիվանդությունները սպանել են բնակչության մոտ կեսը: Իսկ մյուս կեսը քաղցած, անուժ իրեն հանձնել է բախտի քմահաճույքին, համոզված, որ աշխարհի վերջը եկել է և ոչ մի բան իրենց չի փրկի մահվան ճիրաններից: Իսկ եթե դուք ուզում եք իմանալ, թե հետո ի՞նչ պատահեց այդ մարդկանց հետ, մտովի տեղափոխվենք Ախտա: Բայց քարտեզի վրա Ախտան չենք գտնի: Նա կոչվում է Հրազդան և դարձել է Հայաստանի արդյունաբերական ամենախոշոր կենտրոններից մեկը, ուր կառուցվում է լեռնաքիմիական հսկա մի կոմբինատ: Դա Սովետական Միության խոշորագույն ձեռնարկություններից է: Կոմբինատի կողքին նշմարվող բարձր ծխնելույզները՝ Զէկինն ու Պշէկինն են: Այս անծանոթ անունները թող ձեր չզարմացնեն: Դրանք մազութով ու գազով աշխատող ջերմաէլեկտրակայաններ են, որոնք միասին քսան անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա են տալու, քան Հրազդան գետը իր բոլոր հիդրոկայաններով: Բայց եկեք նորից վերադառնանք 1920 թվականը, և միանանք կարմիրբանակայիններին, քանի որ այսօր կառքով նրանց են հասել Սարգիս Կասյանը, Ավիս Նուրիջանյանը: Հեղկոմի նախագահին ու կառավարության ղեկավարները բոլորի հետ նստած թեյ են խմում զինվորական պարզ խարույկի շուրջը: Կարմիրբանակայինները երգում են մեղմ, թախծոտ մեղեդիներ, որոնց մեջ կա ազատության, խաղաղության կարոտ: Եվ շատ մեծ հավատ վաղվա նկատմամբ... Հանկարծ նրանց է մոտենում մի հին մեքենա: Խորհրդային Ռուսաստանի լիազոր Լեգրանը իր աշխատակցի միջոցով Սարգիս Կասյանին հաղորդում է, որ Երևանում սպասում են նրան: Հենց նույն օրը, բանակը թողնելով, Սարգիս Կասյանն ու Ավիս Նուրիջանյանը շտապում են Երևան: Քաղաքի մուտքի մոտ, որ այն ժամանակ գտնվում էր Աբովյանի պուրակում, նրանց դիմավորում են հազարավոր երևանցիներ, շարք կանգնած զինվորական պատվո ջոկատներ: Հենց այստեղ էլ պաշտոնապես Սարգիս Կասյանը ստանձնում է Հայաստանի ղեկավարությունը:



11-րդ բանակի հեծյալ էսկադրոնի հրամանատար Ս. Պոտապովը

Հետո՞: Էլ ի՞նչ հետո: Նրանց ետևից Երևան հասան Կարմիր բանակի զորամասերը և հաղթական երթով իջան այն վայրը, ուր հիմա գտնվում է Լենինի հրապարակը: Ճիշտ է, այն ժամանակվա հրապարակում միայն մի փայտաշեն պարետատուն կար, բայց դա չխանգարեց, որ զինվորական տոնահանդեսը անցնի մեծ ոգևորության ու ցնծության մեջ: Երբեք ոչ մի բանակի հայ ժողովուրդը այդպիսի ջերմ ու սրտաբաց ընդունելություն ցույց չէր տվել: Նման ուրախությամբ ժողովուրդը կարող է դիմավորել միայն ազատարար բանակին: Եվ ստանալով ազատություն ու խաղաղություն, դառնալով իր երկրի տերը, ինքներդ էլ գիտեք, թե ինչ հրաշքներ գործեց մեր շինարար ժողովուրդը: Որպեսզի դրանում համոզվենք, բավական է հենց թեկուզ բարձրանալ «Հաղթանակի» զբոսայգին և դիտել լույսերի անսահման օվկիանոսը, որը մեր մայրաքաղաքն է, մեր շատ ծեր ու շատ երիտասարդ Երևանը: Իսկ մինչ այդտեղ հասնելը եկեք մի պահ կանգ առնենք և մի-մի բուրավետ մեխակ դնենք այն զինվորների հուշարձանին, որոնց շնորհիվ հայ ժողովուրդը հասավ այս բոլորին:



# Նրանք դրեցին



## ԱԼԵՔՍԱՆԴՐ ՄՅԱՍՆԻԿՅԱՆ

1921 թվականի մայիսին Մոսկվայից Հայաստան եկավ Ալեքսանդր Մյասնիկյանը: Եկավ որպես հանրապետության նորաստեղծ կառավարության՝ Ժողկոմխորհի նախագահ: Մինչ այդ նա կուսակցության Մոսկվայի կոմիտեի քարտուղարն էր: Հայաստան ուղարկելուց առաջ Վ. Ի. Լենինը Կրեմլի իր առանձնասենյակում երկար զրուցեց Ալ. Մյասնիկյանի հետ Կովկասի դրության, հայ ժողովրդի հոգսերի, Հայաստանի կոմունիստների խնդիրների մասին: Զրույցի վերջում Ալ. Մյասնիկյանը խնդրեց Իլյիչին զրույցի ընթացքում հայտնած մտքերը գրել և ուղարկել որպես նամակ: Վլադիմիր Իլյիչը այդպես էլ վարվեց, և Կովկասի, այդ թվում Հայաստանի, ընկերներին գրած իր նամակը հանձնեց Ալ. Մյասնիկյանին: Այդ նամակը կովկասյան ժողովուրդների համար հանդիսացավ աշխատանքային ուղենիշ ծրագիր:

Մյասնիկյանը մոտ մեկ տարի աշխատեց Հայաստանում: Նրա ղեկավարությամբ վիթխարի աշխատանք ծավալվեց երկրով մեկ և դրվեցին սոցիալիստական շինարարության, արդյունաբերության, գյուղատնտեսության, սովետական գրականության ու արվեստի առաջին հիմնաքարերը:

Կարճ ժամանակամիջոցում վերսկսվեցին աշխատանքները Ալավերդու և Զանգեզուրի պղնձահանքերում, կարգի գցվեցին Երևանի կաշվի, գինու, մեխանիկական գործարանները, ջուլհականոցները՝ մի շարք շրջաններում: Վերակառուցվեցին Երևանի երկու փոքրիկ հիդրոկայանները և սկսվեց նոր էլեկտրակայանի կառուցումը:

Մեծ աշխատանք էր կատարվում հողերի ոռոգման ուղղությամբ, մաքրվում, վերանորոգվում էին հին ջրանցքները, ձեռնամուխ էին լինում նորերի կառուցմանը: 1922 թ. սկսվեց Շիրկանալի կառուցումը, որը մեծ իրադարձություն էր հայ ժողովրդի կյանքում:

1921 թվականին համարյա բոլոր գյուղերում բացվեցին դպրոցներ, լիկկայաններ, խրճիթ-ընթերցարաններ, լուսավորվում էր գյուղըն ու քաղաքը, վերացվում անգրագիտությունը:

Այդ նույն տարում հիմնվեց Երևանի պետական համալսարանը և այժմ Մյասնիկյանի անունը կրող հանրային գրադարանը:

1922 թ. երբ անդրկովկասյան երեք հանրապետությունները միավորվեցին, կազմելով Անդրֆեդերացիա, Մյասնիկյանն ընտրվեց Անդրկովկասի կուսակցական կազմակերպությունների երկրային կոմիտեի առաջին քարտուղար, Երևանից տեղափոխվելով Թբիլիսի, որն հանդիսանում էր Անդրֆեդերացիայի կենտրոնը: Իսկ մինչ այդ, չնայած կարճ ժամանակամիջոցին, շատ գործ կատարվեց Հայաստանում նրա ղեկավարությամբ:

Նա ամրապնդեց Սովետական Հայաստանի պետականությունը, ցույց տվեց աշխատանքի լենինյան ոճ, մարդկանց համախմբեց և բոլորին կոչ արեց սիրով նվիրվել հարազատ երկրի կառուցմանը:

Ալ. Մյասնիկյանը երբ Հայաստան եկավ, երեսունհինգ տարեկան էր, բայց կյանքի մեծ ճանապարհ էր անցել: Քսան տարեկան հասակում մտել էր Ռուսաստանի բանվորական հեղափոխական կուսակցության շարքերը, քսանվեց-քսանյոթ տարեկան հասակում Անդրկովկասում ճանաչված գրականագետ էր, քննադատ և հրապարակախոս: 1917 թվականի դեկտեմբերին նա նշանակվել էր նորաստեղծ Սովետական Ռուսաստանի զինված ուժերի գլխավոր հրամանատար: Հաջորդ տարին նա խոշոր ծառայություն էր մատուցել Բելոռուսական սովետական հանրապետությունը ստեղծելու գործում և դարձել Սովետական Բելոռուսիայի կառավարության առաջին նախագահը:

Մյասնիկյանը մահացավ 1925 թվին, զոհ գնալով ինքնաթիռային աղետի:

Նա անձնական մեծ հմայքների տեր, մեծ մասշտաբների կազմակերպիչ ու խոշոր պետական գործիչ էր:

Անկարելի է լսել ժամանակակիցների պատմածները նրա մասին և չհամակվել նույն սիրով ու հիացմունքով դեպի նրա անձնավորությունը: Նրա պատկերը անջնջելի է մնացել բոլոր նրանց սրտերում, ովքեր գեթ մեկ անգամ տեսել ու լսել են նրան: Նրա անունը հավետ կմնա Հայաստանի սովետական սոցիալիստական պետության պատմության մեջ:

# առաջին հիմնաքարերը



## ՍԱՐԳԻՍ ԼՈՒԿԱՇԻՆ

1921 թ. Սարգիս Լուկաշինը (Սրապիոնյան) Հայաստանի Ժողկոմխորհի նախագահի պոստում փոխարինեց Ալեքսանդր Մյասնիկյանին: Լուկաշինը նույնպես նորաստեղծ սովետական Հայաստանի այն պետական գործիչներից է, որոնք իրենց լուսավոր հետքն են թողել մեր այս նոր պատմության ու մարդկանց սըրտերում: Նրա անունն անխզելիորեն կապված է իր ժամանակի բոլոր նորակառույցների հետ:

Նա իր անձնական օրինակով ոգևորում ու խանդավառում էր մարդկանց: Նա անձամբ լինում էր բոլոր կարևոր շինարարական հրապարակներում, նրա անմիջական հսկողությամբ էին կառուցվում առաջին խոշոր գործարանները, հիդրոէլեկտրակայանները, Շիրակի ջրանցքը:

Սարգիս Լուկաշինը Հայաստանում մնաց մինչև 1925 թ.: Դրանից հետո նա դարձավ Անդրֆեդերացիայի Ժողկոմխորհի փոխնախագահ, ապա երկար տարիներ շատ կարևոր պաշտոններ էր վարում Մոսկվայում:



## ԱՇՈՏ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Աշոտ Հովհաննիսյանը Հայաստան եկավ 1920 թ., անմիջապես Մայիսյան ապստամբության պարտությունից հետո: Եկավ Ռուսաստանի սովետական կառավարության լիազոր ներկայացուցիչի մանդատով, որպեսզի դադարեցնի բոլշևիկների ու բոլոր ազատատենչ մարդկանց նկատմամբ կիրառվող բռնություններն ու կամայականությունները:

Այդ օրվանից Աշոտ Հովհաննիսյանը մնաց Հայաստանում: Հեղափոխական կոմիտեի հետ միասին նա ղեկավարում էր Հայաստանում սովետական կարգերի համար մղվող պայքարը, իսկ սովետական կարգերի հաստատումից հետո նա եղավ Հայաստանի առաջին լուսժողկոմը, ապա ՀԿԿ Կենտկոմի քարտուղար:

Աշոտ Հովհաննիսյանի ղեկավարությամբ երկրում կազմակերպվեց ուսումնական գործը: Ամենուրեք դպրոցներ էին բացվում, լիկկայաններ, ի՞նչ ավարի ու անգրագիտության մեջ խարխափող երկիրը բռնեց համատարած գրագիտության ուղին:

Բազմավաստակ գիտնական, Հայաստանի գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս Աշոտ Հովհաննիսյանը շարունակում է գիտնականի իր գործը երիտասարդական եռանդով:

## ՀՐԱՄԱՆ

**Դպրոցական կանոնավոր պարապմունքները վերսկսելու մասին**

Որովհետև համաձայն Ռազմժողկոմի... հրամանի՝ կորաժողովի ենթարկված ուսուցիչներն ու աշակերտներն արձակվում են զորամասերից որպես բանակի պահեստայիններ, դպրոցների վարչական մարմիններին առաջարկում եմ միջոցներ ձեռք առնել անհապաղ դպրոցական կանոնավոր պարապմունքները վերսկսելու համար...

Լուսժողկոմ՝ Ա. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

*1920 թ. դեկտ. 18*

## ՀՐԱՄԱՆ

**Խտացրած կաթի, կակաոյի և սպիտակ ալյուրի պաշարը հիվանդներին հատկացնելու մասին**

Պարենժողկոմատի պահեստներում և այլ կոմիսարիատների տրամադրության տակ գտնված խտացրած և հասարակ կաթը, կակաոյի, սպիտակ ալյուրի և շաքարավազի ամբողջ պաշարը հատկացվում է հիվանդների, երեխաների ու որբերի ֆոնդին և բաց է թողնվում միայն համապատասխան ժողկոմների պահանջմամբ:

Հայաստանի հեղկոմի նախագահ՝
Ս. ԿԱՍՅԱՆ

Պարենժողկոմ՝ Ա. ԲԵԿԶԱԴՅԱՆ

Սոցապժողկոմ՝ Դր. ՏԵՐ-ՍԻՄՈՆՅԱՆ

Լուսժողկոմ՝ Ա. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

# Լենինը շատ էր հեռու

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Պղտոր երկնքից իջնում էր խոշոր փաթիլներով ձյունը և հալվում փողոցի թաց խճաքարերի վրա: Անդոն խառնեց Անգլիական այգու աղբակույտերը, ուտելու ոչինչ չգտավ: Ձեռքը պարզած կանգնեց Ղանթար շուկայում, բայց մարդիկ անցնում էին պայուսակները իրենց սեղմած: Խանութպանները նայում էին չար, սաստող աչքերով:

Անդոն դարձավ դեպի Սուրբ Սարգիսի փողոցը: Ծնկները ծալվում էին: Եկեղեցու մոտ կանգնեց, մրմնջաց, ինչպես մի ժամանակ դեռ հեռավոր Ալաշկերտում մրրմընջում էր մայրը.

— Զորավո՛ր Սուրբ Սարգիս, դո՛ւ եղիր որբերիս պաշտպան...

Գիշերը ցուրտ էր: Փողոցի հեռվում խարույկ էր վառվում: Երկու հայ զինվոր հրացանները ծնկների մեջ առած՝ տաքանում էին: Անդոն մոտ գնաց:

— Հա՛ց տվեք:

— Հայ զինվորը հաց չունի,— ասացին նրանք,— մո՛տ արի տաքացիր:

— Դու որտեղի՞ց ես,— հարցրեց նրանցից մեկը:

— Ալաշկերտից,— ասաց Անդոն:

— Ալաշկերտից,— կրկնեց զինվորը:

Հետո նրանք մոռացան Անդոյին ու իրար մեջ ցածրաձայն զրուցում էին: Մի քանի անգամ Անդոյի ականջին հասավ մի անուն, որ առաջին անգամ էր լսում:

— Նա աշխարհի ամենախղճով մարդն է,— ասում էր զինվորներից մեկը մյուսին:

— Ո՞րտեղացի է,— հարցրեց Անդոն, մտածելով, թե նա՝ աշխարհի այդ ամենախղճով մարդը, գուցե ալաշկերտցի է,— ո՞րտեղ է հիմա նա:

— Լենի՜նը... — ծիծաղեցին զինվորները,— Լենինը, է՜, հեռո՜ւ, Պետրոգրադում է ապրում:

— Շա՞տ է հեռու...

— Շա՜տ... Բայց նշանակություն չունի, դու նամակ գրիր Լենինին: Ասա՝ Լենին, Անդոն սոված է, շոր չունի: Լենինը կօգնի:

Փողոցի պղտոր մթնում վառվում էր մի խարույկ: Խարույկի



մոտ ձեռքները պարզած՝ տաքանում էին երկու հայ զինվոր ու մի մանուկ:

Քարվանսարայի փողոցով կառք անցավ: Անդոն թռուցեց զինվորներին, վազեց կառքի ետևից: Ձիերը կուշտ էին, հեռացան: Անդոն վազեց Բեհբութովսկի փողոցով, Ցարսկայա փողոցով: Տեսավ լապտերների լույսի տակ կանգնած է կառքը: Հասավ դեսպանության շենքի մոտ, ուզեց ներս գնալ:

— Այդ ո՞ւր...

Անգլիացի զինվորը բռնեց օձի-

---

# ԱՐԵ՛Վ, ԱՐԵ՛Վ, ԴՈ՛ՒՐՍ ԱՐԻ



ՀՈՎՀ. ՂՈՒԿԱՍՅԱՆ

Նրանք հանդիպեցին ծախու ապրանքներից համարյա կուրկ Ղանթարի տակ, 1918 թվականի մայիսի վերջերին, ինչ-որ բան գնելու տենդով հրմշտվող ամբոխի մեջ:

Առաջինը Վանիկը նկատեց Իվանին, երբ վերջինս կամարակապ Ղանթարի աղյուսաշար սյուներից մեկի տակ պպված, ագահաբար ծամում էր շրթհարմոնի սև բերանին հպած բոքոնի սև շերտը:

Հատկապես այս վերջին շաբաթվա ընթացքում՝ այն օրվանից, ինչ հայրը գնացել էր Սարդարապատում կռվելու և չէր վերադարձել, նա համարյա թե ճանաչում էր Ղանթարում թափառող բոլոր որբերին ու անապաստաններին: Սակայն այս մեկին նա տեսնում էր առաջին անգամ:

Փողքերը գզգզված կապակական լայն շալվարի մեջ կորած անծանոթ այդ տղան այնքան սիրելի-ծիծաղաշարժ տեսք ուներ, տիկնիկային-շիկակարմիր այնպիսի գզգզված մազեր և պեպեններով ծածկված այնպիսի կլորիկ երես, որ Վանիկը մի պահ մոռանալով երկօրյա տանջող քաղցը՝ անքթիթ նայում էր նրան:

Ինչպես պատահում է նման դեպքերում՝ Իվանն էլ կգաց

քից ու հրեց։ Անդոն ընկավ խճաքարերի վրա, ելավ ու գնաց հեռու։ Ու լաց էր լինում։ Հայրիկ չուներ, մայրիկ չուներ։ Ցրտից պաղում էր։ Գիշերը մութ շքամուտքում սեղմվեց որբ ու թափառաշրջիկ երեխաներին ու քնեց։ Երազում տեսավ ճերմակ հաց, վառվող վառարան։ Առավոտյան սառնամանիք էր։ Արթնացան երեխաները, ու ինչ-որ մեկը սկսեց դառնագին լաց լինել։

— Ես գիտեմ ամենախճով մարդու տեղը,— ասաց Անդոն,— եթե մենք նամակ գրենք նրան, նա հաց կուղարկի մեզ համար։

Լաց լինող տղան սսկվեց։ Անդոն ասաց.

— Նա Պետրոգրադ է մնում։ Եկեք նամակ գրենք։

— Եկեք գրենք...

Ճարեցին թուղթ ու մատիտ։

— Գրիր, որ ես իմ մայրիկին եմ ուզում,— ասաց լաց լինող տղան։

— Գրիր, թող հաց ուղարկի։

— Շաքար էլ...

— Շոր էլ...

Գրեցին, և հետո թափառաշրջիկ ու որբ երեխաները առավոտյան սառնամանիքից սառած մայթերով վազեցին, հասան փողոցի անկյունը և նամակը փոստարկղը գցեցին։

Անցան օրեր։ Ցուրտը սաստկացավ։ Անդոն սովից հյուծվել էր, ոտքերում ուժ չկար։ Նստեց մի պատի տակ, աչքերը խփեց։

Մի մարդ անցավ, ետ դարձավ, ձեռնափայտով հրեց.

— Է՜յ, տղա՛, մեռնո՞ւմ ես։

Անդոն աչքերը բացեց։

— Ի՞նչ ես ննջում,— ասաց մարդը,— գնա Աստաֆյան փողոց, տես այնտեղ ի՞նչ մեծ թամաշա է։

Անդոն ելավ, քարշ գալով գնաց։ Տեսավ՝ վազում են բոլոր թափառաշրջիկ ու որբ տղաները, կիսամերկ ու սոված մարդիկ, դեպի Աստաֆյան փողոց։ Գալիս էին սովահար գաղթականները, տանջված գյուղացիները և տենդից դեղնած քաղաքացիները։

— Ուռա՜...

Անցնում էր զինվորական նվագախումբը։

Տղաները՝ Անդոն, Հայկոն, Բաբիկը, Խաչոն և մյուս բոլոր որբ ու անապաստան տղաները աշխատում էին նվագախմբի քայլերգին համաչափ դոփել մայթերը։ Անցնում էին խոշոր ձիերն ու ետևից քարշ տալիս երկաթե մեծ անիվներով թնդանոթներ։ Իսկ թնդանոթների ետևից գալիս էին հեծյալ զինվորները՝ բարձր ձիերի վրա, կարմիր աստղավոր գլխարկներով ու հրացաններով։ Եվ տղաները վազեցին թնդանոթի ետևից։

Իսկ թնդանոթի հրասայլին նստած մի շեկ զինվոր ձեռքով կանչում էր։ Վազեցին տղաները, թռան հրասայլին, նստեցին զինվորի կողքին։

— Դե՛հ, ինչպե՞ս է,— հարցրեց զինվորը Անդոյին, հենց Անդոյին, ոչ թե ուրիշին։ Անդոն,



նրա հետ էլ մյուս նիհար ու թուխ տղաները, ամոթխած խնդացին։

— Անունդ ի՞նչ է,— դարձյալ դիմում է Անդոյին։ Ինչպես երևում է, Անդոն նրան մի ինչ-որ բանով ավելի է դուր եկել։

— Անդո։

— Քաղցա՞ծ ես։

Անդոն գլխով է անում՝ քաղցած է, բոլորը քաղցած են...

Զինվորը ուսից իջեցնում է պարկը, միջից հանում է մի ամբողջ սև բոքոն։

---

Վանիկի հայացքը և, գլուխը բարձրացնելով, իր պարմանալի կլոր ու կապույտ աչքերով նայեց նրան։ Հետո, երևի նրան էլ շատ արտասովոր ու ծիծաղելի թվացին Վանիկի շիկ, կայծկլտուն աչքերն ու լաքի պես պսպղացող սևուլիկ դեմքը և, ուտելը մոռանալով՝ նա էլ սկսեց անքթիթ նայել։ Հետո նրանք առանց խոսքը մեկ արած, ժպտացին. և, ժպտալու ժամանակ, Իվանը ոտքի ելնելով մոտեցավ Վանիկին։

— Նա... բերի՜,— ժպտուն աչքերը Վանիկի պարմանքից շաղվող աչքերից չկտրելով, շշնջաց նա, հացի մնացորդը նրան պարզելով։

— Ե՜շ, ե՜շ,— կրկնեց Իվանը, ուղղակի նրա ձեռքի մեջ խոթելով բոքոնի կտորը։

Ռուսերեն չիմացող Վանիկին թվաց, որ նա ոչ թե «կեր, կեր» է ասում, այլ՝ «էշ, էշ»,— այսինքն՝ հիմարություն է արածըդ՝ վերցրու կեր։ Եղավ մի վայրկյան, որ նա ուզեց այդ կարծեցյալ վիրավորանքին պատասխանել բռունցքով, բայց այնքան բարի և այնքան ջերմ էր իր թմփլիկ հասակակցի հայացքը, և պարմանալիորեն կլոր ու կապույտ աչքերի մեջ բախտակցի այնպիսի անկեղծություն կար, որ նա ինքն էլ չիմացավ, թե ինչպես վերցրեց հացի կտորը և ագահորեն սկսեց ծամել։

Իվանը հաճույքով նայում էր նրան։

— Խարաշո՞,— համարյա ծղրտալով հարցրեց նա։

Վանիկը գիտեր «խարաշոն», գիտեր և «իմյա»-ն։

— Խարաշո,— կրկնեց նա ժպտալով։— Ուռո՞ւս։

— Ուռուս,— երևի այդ «ուռուս»-ի համար թափված ատամները ցույց տալով ժպտաց և Իվանը։

— Խարաշո, ուռուս, խարաշո,— ասաց Վանիկը և իսկույն ավելացրեց.— Իմյա՞։

— Իվան։ Ա տը՞յ։

— Վանիկ։

— Էտո Վանյա, խարաշո, յա տոժե Վանյա. Իվան՝ Վանյա։

Վանիկը չհասկացավ Իվանի վերջին խոսքերը, ավելի շուտ նրան թվաց, որ նա ասում է՝ ես էլ եմ Վանա կողմերից։

— Տը՞յ Վան,— բերանը ծռելով ժպտաց նա,— սուտ կասես։ Ես Վան, ես եմ Վանա քաղքից։ Գորոդ,— ավելացրեց նա լըրջորեն իր իմացած վերջին բառը։



— Ա՛ռ, վերցրո՛ւ:

Անդոն չի հավատում. մի ամբողջ բոքոն...

— Վերցրո՛ւ,— ասում է,— ամաչելու բան չկա:

Եվ զինվորը ծնկին դնելով ջարդում է բոքոնը: Եվ հրասայլին նստած տղաները ախորժակով ծամում են բոքոնը: Իսկ շուրջը ժողովուրդը գոռում է.

— Կեցցե՛ սովետը, կեցցե՛ սովետի իշխանությունը...

— Իսկ գիտե՞ք ով է ուղարկել բոքոնը,— ասում է զինվորը:

Տղաները չգիտեն:

— Լենինը:

— Լենի՞նը:

— Լենինը:

Ա՛յ քեզ զարմանք բան... Տղաները նայում են իրար:

— Սա դեռ բոլորը չէ,— ասում է զինվորը:— Ես նրան տեսել ու խոսել եմ հետը: Նա ինձ ասաց. «Կգնաս, Իվա՛ն, Հայաստան և կասես Անդոյին ու մյուս բոլոր տղաներին, որ ես նրանց ուղարկում եմ սովետական իշխանություն»: Դա այն է, որ էլ ոչ մի երեխա չի սովի, որ դուք կապրեք տաք տների մեջ, ինչպես մարդուն վայել է, դպրոց կգնաք, գրքեր կկարդաք և կիմանաք աշխարհում եղած ամբողջ ճշմարտությունը: Իսկ ամենից առաջ՝ պատերազմին վե՛րջ: Ա՛յ, թե ինչ բան է սովետական իշխանությունը:— Ու զինվորը խնդում է.— Հապա՜...

— Ուրեմն, քեռի՛, Լենինը ըստացե՞լ է նամակը:

Ցատկում են տղաները հրասայլի վրայից, վազում են մարդկանց միջով, վազում են գտնելու իրենց բոլոր ընկերներին, պատմելու, թե ինչպես Լենինը ստացել է իրենց նամակը և իրենց բոլորին ուղարկել է հաց և գիտե՞ք էլի ինչ. սովետական իշխանություն:

*Երևանը գիշերով*
*Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ԲԵՏԻԿՅԱՆԻ*

— Դա, դա, Վան. կնայու, սլլըշալ, Վան, Ա յա իվ Ռասսիի. իվ Դոնբասսա:

Վանիկը նորից ոչինչ չհասկացավ: Նա միայն քնքշորեն բոթեց Իվանի մերկ ուսը և խորամանկորեն ժպտաց, այսինքն՝ ձեռ ես առնում, հա՜...

Ու հենց այդ օրվանից նրանք ընկերացան:

Անցավ մի տարի...

Սարդարապատի ճակատամարտից հինգ օր հետո,— այն ճակատամարտի, որտեղ շատերի հետ քաջի մահով հերոսացավ և Վանիկի հայրը,— Հայաստանի մայրաքաղաք հռչակված Երևանի վրայով անցավ սովի, տարափոխիկ հիվանդությունների և կամայականությունների մի դառն տարի:

Հնգամյա պատերազմից հոգնած, նախկին վարդագույն երազանքներից հիասթափված քաջարի զինվորների և կամավորների օրեցօր աճող տրտունջի հետ, հարստահարվող գյուղացիության և արյունահոս Արևմտյան Հայաստանից Արարատյան դաշտում ապաստանած անտուն և անօթևան գաղթականների տառապանքը կիսելով, Վանիկն ու Իվանը այդ մի տարվա մեջ ծերացան տաս տարով:

Այդ մի տարում նրանք ոչ միայն անհուն սիրով կապվեցին իրար, այլև հայերենի և ռուսերենի կցկտուր խառնուրդով իմացան իրար այնքան նման իրենց կարճ կյանքի պատմությունները:

Իվանը գիտեր, որ Վանիկի դեռ նոր սկսված մանկությունը մնացել էր Վանում, մայրը՝ գաղթի ճանապարհին, հայրը՝ Սարդարապատում:

Վանիկն էլ գիտեր, որ Իվանի մորը թաղել էին պատերազմից առաջ, բանվոր հորը ուղարկել Կովկասյան ճակատ՝ Վանի կողմերը, և նա իր սալդաթ հայրիկին փնտրելու համար, հեղափոխությամբ բռնկված Ռուսաստանի միջով, երբեմն ոտքով, երբեմն ապրանքատար վագոններում կուչ եկած, հասել էր Թիֆլիս, ապա... Երևան...

Եվ ահա Վանը թուրքերի ձեռքին էր, Ռուսաստանի ճամփաները փակ. և հորից ոչ մի լուր...



Մի՞թե նա էլ էր ընկել թուրքի գնդակից, ինչպես Վանիկի հայրը՝ Սարդարապատում...

Ահա, թե նորից, հենց քիչ առաջ, ինչի մասին էր իր կասկածը հայտնել Իվանը և ինչու էին նրանք երկուսն էլ այդպես լուռ, անտրամադիր:

Արդեն երկրորդ օրն էր, որ նրանք սնվում էին միայն կաղամբի փտած տերևներով, որ եռման ջրի ողողուցքի հետ միասին դուրս էր շպրտում կայարանի միակ ճաշարանի խոհարարը, խոհանոցի բաց լուսամուտի տակ բարձրացած աղբակույտի վրա:

Նրանք պառկած էին հենց այդ աղբակույտից ոչ շատ հեռու և այժմ, լուռ ու տխուր, երկուսն էլ մտածում էին Վանի ու Իվանի հոր մասին:

Նրանք պառկած էին մեչքի վրա, ձեռքերը բարձ արած, վաղ աշնանային պղտոր ու անարև երկնքի տակ:

— Վանի՛կ,— ասաց Իվանը, ասես հոր աղոտացած, փախչող կերպարանքը փակ կոպերի տակ հազիվ պահելով,— երգի՛ր ձեր այն «Արև, արև...»-ը:

— Սիրտ չկա:

— Երգի՛ր, լավ երգ է, մեր երգն է որ կա:

Վանիկը երկար սպասեցնել չտվեց.

— Արև՛, արև՛, դո՛ւրս արի,
Աչքդ-ունքդ ինձ ցո՛ւյց տուր,
Ցրտից ջանըս դողում ա,
Խեղճ որբուկիս տաքացո՛ւր:

— Օ՛խ,— ծերունու նման հառաչեց Իվանը:

— Հայրըս, մայրս սպանավ
Քյաֆիր թուրքը, ո՞ւր գնամ,
Փարա չունիմ փայտ առնեմ,
Օջախ վառեմ, տաքանամ...

Արև՛, արև՛, դո՛ւրս արի՝
Ինձ մի քաղցր խո՛սք ասա...



անդիպե՞լ է այդ դուք ձեզանից որևէ մեկը կախարդի հետ: Կամ տեսե՞լ է արդյոք: Այո՞: Իսկ որտե՞ղ: Հա՛, հեքիաթների՛ մեջ... Իսկ Աշոտին, ա՛յ, վիճակվեց հանդիպել նրան իրականության մեջ: Այո՛, այո՛, իսկական կախարդի, ձեռքին բռնած կախարդական փայտիկ, որի մի շարժումով կարելի է կատարել այնպիսի՜ հրաշքներ, այնպիսի՜ հրաշքներ...

Դա պատահեց միանգամայն անսպասելի կերպով, պատահեց մի... Քիչ մնաց ասեի՝ «մի սովորական օր»: Բայց բանը հենց այն է, որ օրը սովորական չէր, այլ 1970 թվի նոյեմբերի 28-ն էր, շաբաթ օրը, Սովետական Հայաստանի հիսնամյակի նախօրեն...

Աշոտը տանն էր: Բայց ոչ թե սենյակներում, այլ՝ փողոցի վրա բացվող պատշգամբում: Հիացած նայում էր տոնի առթիվ փառահեղ զարդարված Աբովյան փողոցին, որի բազմահարկ շենքերից մեկի հինգերորդ հարկում ապրում էր նա՝ իր ծնողների հետ:

Լսվեց դռան զանգի ձայնը: Աշոտն արագ մտավ սենյակ, այնտեղից՝ նախասենյակ, և բաց արեց դուռը:

Նրա դիմաց կանգնած էր վաթսուն-վաթսուներկու տարեկան մի բարձրահասակ մարդ, առույգ ու թարմ տեսքով, թեև մազերը ճերմակ:

— Կարելի՞ է,— ասաց մարդը:

— Խնդրեմ,— հրավիրեց Աշոտը և ուզեց ավելացնել՝ «բայց ծնողներս տանը չեն»: Զգաց, որ դա կստացվի անքաղաքավարի, ուստի և ասաց.

— Խնդրեմ: Ծնողներս տանը չեն, բայց շուտով կգան:

— Շատ ուրախ եմ, որ շուտով կգան,— ժպտաց մարդը,— բայց ես եկել եմ հենց քե՛զ մոտ:

— Ի՞նձ մոտ...

— Այո՛, Աշո՛տ:

— Դուք գիտեք նաև իմ անո՞ւնը...

— Ես ամեն ինչ գիտեմ: Ես կախարդ եմ:

— Կախա՞րդ...

Աշոտը միայն հիմա ուշադրություն դարձրեց, որ մարդն իր ձեռքում բռնել էր փայտե մի կարճ ձողիկ: Բայց հետո՞ ինչ, ո՞վ ասես, որ չի կարող ունենալ այդպիսի ձողիկ:

— Դե որ այդպես է՝ մի կախարդություն արեք,— առաջարկեց Աշոտը թերահավատորեն:

— Ի՞նչ կախարդություն անեմ,— ասաց մարդը՝ դժվար վիճակի մեջ ընկնելով:— Ա՛յ, եթե դու ապրեիր մի աղքատիկ ու խարխուլ խրճիթում, ես կարող էի այնպես անել, որ իսկույն ապրեիր բազմահարկ շենքի հինգերորդ հարկում: Եթե ցնցոտիներով լինեիր՝ ես կարող էի քեզ հագցնել շատ լավ հագուստ: Բայց դու ամեն ինչ ունես, Աշո՛տ, ի՞նչ կախարդություն անեմ հիմա...

Աշոտն սկսեց մտածել:

— Հա՛,— ասաց կախարդը հանկարծ,— գտա: Ես կարող եմ անել հակառակ կախարդություն, որ դու ապրես աղքատիկ ու խարխուլ խրճիթում, հագած լինես ցնցոտիներ...

— Չեմ ուզում,— վախեցավ Աշոտը:

— Ժամանակավորապես,— հանգստացրեց կախարդը:— Իսկ հետո ամեն ինչ նորից կլինի նախկինը:

— Եթե ժամանակավորապես է, դա ուրիշ բան:

Աշոտը ոչ միայն համաձայնվեց, այլև ինքն սկսեց խնդրել կախարդին՝ ուղղակի այրվելով հետաքրքրությունից:

Կախարդը բարձրացրեց իր փայտիկը և մի կտրուկ շարժում արեց օդում: Նա հազիվ էր արել այդ շարժումը, երբ լավ կահավորված երկու սենյականոց բնակարանը դարձավ մի աղքատիկ ու խարխուլ խրճիթ, իսկ Աշոտը՝ ցնցոտիներ հագած տղա, գզգզված մազերով ու ոտաբոբիկ:

Ա՛յ քեզ հետաքրքիր բան... Աշոտը բարձր ծիծաղեց այդ կախարդության վրա, բայց ծիծաղը կիսատ մնաց նրա բերանում: Ձողիկը, որը կախարդը շատ կտրուկ կերպով էր շարժել օդի մեջ, դուրս պրծավ նրա ձեռքից և դուրս թռավ պատշգամբի բաց դռնով:

Աշոտը դուրս վազեց պատշգամբ և... սառեց-մնաց տեղում: Ի՞նչ պատշգամբ, ի՞նչ բան, երբ նրանց խրճիթը միհարկանի էր: Պատշգամբի փոխարեն նա դուրս ելավ մի նեղլիկ, ցեխոտ, փոշոտ, քարքարոտ փողոց:




*ՄԿՐՏԻՉ ԱՐՄԵՆ*

Իսկ փայտիկը չկար...

Իսկ փայտիկը չկար. հասկանո՞ւմ եք, թե ինչ է նշանակում դա... Դա նշանակում է, որ կախարդն այլևս չպիտի կարողանար նորից շարժել դա օդի մեջ և ամեն ինչ դարձնել նախկինը...

Աշոտը տագնապահար սկսեց փնտրել փայտիկը ցեխի, փոշու և քարերի մեջ, բայց փայտիկը չկար ոչ մի տեղ... Քիչ մնաց նա գոռալով լաց լիներ: Վազեց ներս՝ կախարդին օգնության կանչելու, որ միասին փնտրեն:

Բայց խրճիթում, կախարդի փոխարեն, կանգնած էր Աշոտին հասակակից տասներկու տարեկան մի տղա՝ նույնպես ցնցոտիներով, նույնպես գզգզված մազերով և ոտաբոբիկ:

— Ո՞վ ես դու,— զզվեց Աշոտը,— իսկ ո՞րտեղ է կախարդը...

Էսօր ցրտից մր մեռնեմ,
Էլ քո սաքը ինչի՞ս ա...

— Լավ երգ է, աստված վկա, լավ երգ է. ափսո՜ս, որ մի քիչ տխուր է,— ասաց Իվանը, երբ Վանիկը լռեց:

— Տխո՞ւր է... դե հիմի էլ դու երգիր հայրիկիդ երգը:

— Հայրիկիս երգը՛,— թախծալի կրկնեց Իվանը:— Տեսնեիր ինչպե՜ս էին երգում նրանք... Հավաքվում էին մեր տանը և երգում... «Կամաց, մի քիչ կամաց երգեք»,— ասում էր մայրիկս, իսկ նրանք լսո՞ւմ էին...

— Երգի՛ր, Իվա՛ն, այդ երգը երգելիս ինձ թվում է, որ լավ օրեր են գալու:

— Իսկ ինձ թվում է՝ հայրիկս է գալու... ասում են երգե՞նք,— հուզմունքից խեղդվելով ասաց Իվանը... ու քիչ անց սկսեց.

— Շաչում են մեզ վրա հողմերը դաժան,
Եվ մութ ուժերն են մեր երթը կասում...

Այստեղ Վանիկը աղավաղելով և երբեմն չիմացած բառի տեղ հարցական նայելով Իվանին՝ միացավ նրան.

— Դեպի մա՜րտ արյան·
Արդար, սրբազան...

Բայց երգը չավարտվեց: Հենց այդ պահին շրխկոցով բացվեց ճաշարանի յուսամուտը և, կեղտոտ հայհոյանքների հետ, նրանց վրա շպրտվեց օղու դատարկ մի շիշ.

— Ա՜յ ես ձեր... շա՜ն լակոտներ, դու մի սրանց ոխկին նայիր. եկել ու ականջիս տակ բոլշևիկյան երգեր են երգում, էն էլ՝ ռուսերեն, էն էլ՝ ռուսերեն...— կրկնում էր նա կեղտոտ, թուրքերենախառն հայհոյանքների միջից:

Փախչելու ժամանակ Իվանն ու Վանիկը միայն մի վայրկյան

— Ես եմ կախարդը,— ասաց տղան: — Այո՛, այո՛, մի՛ զարմանա: Ես անզգույշ շարժեցի փայտիկը, դա դուրս թռավ իմ ձեռքից և, ահա... Գնանք գտնենք, որ ես նորից դառնամ վաթսուներկու տարեկան, իսկ դու նորից հագնես քո լավ հագուստը և ապրես բազմահարկ շենքի հինգերորդ հարկում...

Երբ Աշոտն ու կախարդը դուրս ելան փողոց, այնտեղ մի այնպիսի տեղատարափ անձրև էր գալիս, գետնի վրայով հոսում էր անձրևաջրի մի այնպիսի հեղեղ, որը կարող էր քշել-տանել ոչ միայն կախարդական թեթև ձողիկը, այլև շատ ավելի մեծ առարկաներ...

Ցնցոտիներ հագած երկու տղաները ցնցվեցին աշնանային սառը անձրևից, ուզեցին նորից փախչել ներս, խրճիթ, բայց այդ րոպեին նրանց ետևում լսվեց մի խուլ թնդյուն: Նրանք ետ նայեցին: Դա՝ փուլ էր եկել աղքատիկ ու խարխուլ խրճիթը: Վերջ: Աշոտն այլևս տեղ չունի ապրելու..

— Գնանք, գնանք,— շտապեցրեց նա՝ քաշելով իր հասակակցի ձեռքը:— Գնանք հեղեղի ուղղությամբ, գտնենք կախարդական փայտիկը: Ես այլևս չեմ կարող, ես ուզում եմ, որ ամեն ինչ լինի այնպես, ինչպես որ կար նախքան քո գալը..

Նրանք քայլեցին: Անձրևը, ինչպես որ սկսվել էր հանկարծակի, այդպես հանկարծակի էլ կտրվեց: Իսկույն երևաց արևը և տաքացրեց կիսամերկ տղաների մարմինները:




Տաքանալուց հետո Աշոտն ավելի ուժեղ զգաց քաղցը:

— Սոված եմ...— շշնջաց նա:

— Հիմա ուտելու բան կճարենք...— խոստացավ նրա հասակակիցը:

— Ախր դրամ չունենք...

— Մենք ոչինչ չունենք: Դրա համար էլ ասացի՝ «կճարենք» և ոչ թե «կըգնենք»:

Աշոտը նոր միայն նկատեց, որ Աբովյան փողոցում չկար ոչ մի պետական մթերային խանութ: Դրանց փոխարեն շարված էին մանրիկ կրպակներ, իսկ կրպակներում չար դեմքերով մարդիկ՝ կրպակների վարիչները:

— Ոչ թե վարիչները, այլ՝ տերերը,— բացատրեց կախարդը:

Դեռ Աշոտը չէր հասցրել ոչինչ ասել, երբ նրա հասակակիցը կրպակներից մեկի ապակու ետևից թռցրեց ցուցադրված հացը և փախավ:

— Բռնե՛ք գողին,— բղավեց կրպակի տերը՝ դուրս թռչելով փողոց: Դուրս թռան նաև մի քանի այլ կրպակների տերեր:

— Փախի՛ր, Աշո՛տ,— իր հերթին բղավեց կախարդը՝ հացը կիսելով և կեսը տալով նրան:— Եվ կե՛ր՝ քանի չեն խլել:

Հազիվ էր Աշոտը մի կողմ նետվել, երբ կրպակի տերերը հասան կախարդին, տապալեցին գետին և սկսեցին ոտքերով անխնա հարվածել նրան: Նրանք ծեծում էին, իսկ տղան հացն էր կուլ տալիս խոշոր պատառներով՝ քանի դեռ չէին խլել նրանից:



Քիչ հետո, ծեծված, ջարդված, նա գտավ Աշոտին, որը լալիս էր վշտից ու խղճահարությունից:

— Ինչո՞ւ միլիցիոներ չկանչեցիր,— բարկացավ նա:

— Իսկ մի՞թե միլիցիոները պիտի պաշտպաներ ինձ,— տխուր ժպտաց կախարդը:— Սա հո սովետական իշխանությունը չէ՞: Սա 1920 թիվն է, դաշնակների կառավարությունը: Եվ նրանց միլիցիոներները պաշտպանում են միայն հարուստներին ու զոռբեղներին...

Իսկ կախարդական գավազանը, որքան էլ որ եռանդուն էին փնտրում տղաները, չկար ու չկար...

Փողոցներից մեկում տղաները տեսան մի խումբ անապաստան երեխաների, որոնք մի ավերակի մեջ խարույկ արած և դրա շուրջը բոլորված, չորացնում էին իրենց ցնցոտիները և պատրաստվում գիշերելու հենց այդտեղ, բաց երկնքի տակ: Նրանք պատերազմներում և հիվանդություններից մահացած ծնողների երեխաներն էին և հենց դրա համար էլ կոչվում էին անապաստաններ:

Աշոտն ու կախարդը նույնպես մոտեցան խարույկին, մի քիչ տաքացան, բայց, փոխանակ պատրաստվեն քնելու, նորից շարունակեցին կախարդական փայտիկը փնտրել՝ մինչև որ մութը լրիվ ընկավ:

Բայց փայտիկը չկար...

Անապաստան երեխաները քնեցին մինչև կեսօր: Նախ՝ այն պատճառով, որ գիշերը, ցրտից կուչ եկած և իրար սեղմված, չէին քնել համարյա բոլորովին, և, երկրորդ՝ նրա համար, որ ինչքան շատ քնես՝ այնքան քիչ կլինես սոված...

Միայն Աշոտն էր շատ վաղ արթնացել և այժմ, չոր գետնի վրա պառկած, կապույտ երկնքին նայելով, տխուր մտածում էր: Ախ, տեսնես կգտնե՞ն կախարդական փայտիկը... Իսկ... իսկ գուցե գտել են անապաստան երեխաները և, առանց իմանալու, թե ինչ ուժ ունի դա, նետել են խարույկը և վառե՞լ... Այդ դեպքում ընդմիշտ մնաս բարև, երջանիկ կյանք...

Հիմա Աշոտի ծնողները ինչքա՜ն են անհանգստացել, որ իրենց տղան անհետացել է և նույնիսկ գիշերը տուն չի եկել... Սպասիր, իսկ որտե՞ղ են հենց իրենք՝ ծնողները: Չէ՞ որ նրանց բնակարանը նախ դարձավ խրճիթ, ապա այդ խրճիթն էլ քանդվեց...

կարողացան ետ նայել: Փափախը արնակալած աչքերին, երկար ու սև բեղերով մեկը, նա, որ հենց քիչ առաջ շպրտել էր օղու շիշը, այժմ նրանց ետևից հասնելու համար փորձում էր դուրս նետվել լուսամուտից, բայց երիտասարդ մի երկաթուղային արգելում էր նրան:

Նրանք երկար վազելով, շնչասպառ ընկան կայարանամերձ փոսերից մեկի մեջ:

— Կմբաբեղ բըլ...— ուզում էր ասել՝ խմբապե՛տ էր, ձեռքը սրտին սեղմելով, շշնջաց Իվանը ծանր հևալով:

Վանիկը հաստատեց, և վազքից ու քաղցից պտտվող գլխով փռվեց փշոտ մոլախոտերի վրա:

Փչում էր վաղ աշնանային քամին, որ նրանց ականջին էր հասցնում գծերի վրա մանյովրող վագոնների խուլ շառաչները:

Կիսախավար կայարանում, իրիկնային ուժեղ քամուց օրոր վում էին սյուներից կախված հատուկենտ լապտերները, երբ նրանք նորից մոտեցան մեկնելու պատրաստ տվող գնացքին: Ու երբ նրանք հարմար պահ էին գտել ապրանքատար վագոններից մեկի մեջ խցկվելու, ինչ-որ մեկը ձեռքը դրեց Վանիկի ուսին:

Նրանք երկուսն էլ վախեցած ետ ընկրկեցին: Բայց վախենալու բան չկար, նրանք իսկույն ճանաչեցին երիտասարդ երկաթուղայինին, որ այժմ նրանց էր նայում թախծալի, կարեկցական ժպիտով:

— Այս ի՞նչ եք անում այստեղ, տղե՛րք,— ասաց նա:

— Մենք... մենք...— ուզեց ինչ-որ բան ասել Վանիկը:

— Մի՛ վախեցեք, նա գնացել է,— իսկույն ներ հանգըստացրեց երիտասարդը, և նրանք երկուսն էլ զգացին, որ խոսքը

Աշոտն սկսեց ցնցել, արթնացնել կախարդին.

— Վե՛ր կաց, խնդրում եմ, գոնե ասա՝ որտե՞ղ են իմ ծնողները...

— Այդ արդեն չգիտեմ,— խոստովանեց կախարդը:

— Գնանք փնտրենք փայտիկը,— աղերսեց Աշոտը արցունքների միջից:

— Բայց որտե՞ղ, որտե՞ղ:

— Վերադառնանք մեր քանդված խրճիթի մոտ: Գուցե հեղեղը չի քշել-տարել, հը՞, գուցե դեմ է առել քարերի արանքում ու մնացե՞լ...

— Գնանք,— առանց որևէ հույսի, համաձայնվեց նրա հասակակիցը:

Նրանք բարձրացան Աբովյանով վեր: Այդ ի՞նչ խեղճ ու ողբալի փողոց էր, այդ ի՞նչ հին ու հետամնաց Երևան... Աշոտը միայն կինոյում էր տեսել դա, իսկ այժմ, ահա, իրականության մեջ...

Նրանք բարձրացան փողոցով՝ համարյա մինչև դրա ծայրը: Կանգ առան խրճիթի ավերակի մոտ և հենց այն է, ուզում էին սկսել որոնումները, երբ Քանաքեռից դեպի Երևան իջնող ճանապարհի բարձրում երևաց հետևակ ու հեծյալ զորք, հնչեցին նվագ ու երգ:

— Այդ ի՞նչ է, ովքե՞ր են,— զարմացավ Աշոտը:

— Դա Կարմիր բանա՛կն է մտնում Երևան,— ուրախ բացականչեց կախարդը:— Ուրեմն՝ վե՛րջ դաշնակների տիրապետությանը, վե՛րջ մեր թշվառ կյանքին:

— Դու լո՞ւրջ ես ասում,— շողաց Աշոտն ուրախությունից:— Ուրեմն կլինի՞ ամեն ինչ...



— Ամե՛ն, ամե՛ն ինչ:

— Եվ մեր տո՞ւնը՝ բազմահարկ շենքի հինգերորդ հարկում:

— Այո՛:

— Եվ իմ հագուստնե՞րը: Եվ մեր դպրո՞ցը: Եվ պիոներական պալա՞տը: Եվ երջանիկ կյա՞նքը...

— Ամե՛ն, ամե՛ն ինչ:

Աշոտը վախենում էր հարցնել ծնողների մասին, վախենում էր ստանալ բացասական պատասխան:

— Իսկ ե՞րբ, ե՞րբ կլինի,— անհամբերացավ Աշոտը:— Չէ՞ որ նրանք արդեն իջան Քանաքեռի բարձրավանդակից և մտան Աբովյան: Ե՞րբ կլինի:

— Աստիճանաբար: Հիսուն տարվա ընթացքում:

— Հիսուն... տարվա՞...

— Այո՛: Հիսուն տարվա:

— Ախր ես այն ժամանակ կդառնամ վաթսուներկու տարեկան,— վշտից կակազելով, հազիվ արտասանեց Աշոտը:

— Ո՛չ,— թախիծով ասաց կախարդը,— այդ ես ինքս կդառնամ վաթսուներկու տարեկան: Այդ իմ հայրն է սպանվել Համաշխարհային առաջին պատերազմում: Այդ իմ մայրն է մահացել տիֆից, մի ամիս առաջ, փողոցում: Այդ ես եմ մնացել անապաստան երեխա...

Կարմիր բանակն արդեն գալիս էր Աբովյան փողոցով: Իրենց խղճուկ տնակներից դուրս թափված, մարդիկ ողջունում էին ազատարար բոլշևիկներին և լաց էին լինում ուրախությունից:

Կախարդը շարունակում էր խոսել.

— Այդ ես ինքս եմ բահով հող փորելու և մեջքով քար կրելու, առաջին արտերը ցանելու և առաջին գործարանները կառուցելու: Այդ ես ինքս եմ աղքատիկ կյանքով ապրելու և քո լավ ապագայի հիմքերը դնելու: Այդ ես ինքս եմ քաղաքացիական պատերազմում և Հայրենական պատերազմում կռվելու ու վիրավորվելու, առողջանալու և նորից կռվելու, հաղթելու: Իսկ դու, Աշո՛տ...

Կախարդը կիսատ թողեց իր խոսքը, կռացավ և փողոցի մեջտեղից, հեղեղի կուտակած հողի ու քարերի արանքից հանեց կախարդական փայտիկը, շարժեց օդում:

Սենյակում ընթերցանությամբ կլանված Աշոտը չլսեց նույնիսկ, թե ինչպես բանալիով բացվեց նրանց բնակարանի դուռը, ինչպես ներս մտան նրա ծնողները, եկան սենյակ և լուռ կանգնեցին Աշոտի դիմաց՝ մինչև որ նա կավարտեր կարդալը:

Աշոտն ավարտեց և միայն դրանից հետո նկատելով ծնողներին, վեր ցատկեց, գրկեց նրանց և սկսեց համբուրել, համբուրել:

— Դուք կենդանի՛ եք, դուք ողջ-առո՛ղջ եք,— միաժամանակ բացականչում էր նա անընդհատ:

— Իսկ ինչո՞ւ չպիտի լինենք կենդանի և ողջ-առողջ, ի՞նչ է պատահել քեզ, Աշո՛տ:

— Ի՞նձ... Շատ բան: Ես հենց նոր կարդացի «Պիոներ» ամսագրում մի պատմվածք՝ «Հանդիպում կախարդի հետ»: Ինչ լա՛վ է, որ դա պատմվածք է և ոչ թե իրականություն:

Աշոտը, բուռն ուրախության մեջ, նորից վազ տվեց պատշգամբ: Նայում էր իրականությանը և չէր կշտանում: Իսկ իրականությունն այն էր, որ դա 1970 թիվն էր, նոյեմբերի 28-ը՝ Սովետական Հայաստանի հիսունամյակի նախօրյակը:

---

շիշը շպրտողի մասին է:— Գնանք, գնանք ինձ մոտ:

Սկզբում անվստահ, բայց, հետզհետե սիրտ առնելով, նրանք հետևեցին երիտասարդին: Սակայն, երբ քիչ հետո մտան միահարկ, երկարուկ մի շենքի գրասենյակի նմանվող խուցերից մեկը, շշի ծայրին ամրացված մոմի լույսի տակ ցրվեց ամեն մի կասկած:

— Նստե՛ք, նստե՛ք,— ասաց երկաթուղայինը:

Նրանք նստեցին:

— Դե՛, հիմա ինձ ասե՛ք, թե ինչու եք այս երկու-երեք օրը պտտվում կայարանի շուրջ: Ես ձեզ հենց առաջին իսկ օրն եմ նկատել,— ժպտալով ավելացրեց նա:

— Ուզում ենք Ալեքպոլ գնալ,— երկաթուղայինի ժպիտից խրախուսվելով, շշնջաց Վանիկը:— Դե... էնպես... առանց բիլեթի...

— Իսկ ինչո՞ւ եք ուզում գնալ:

Ասում են էնտեղ հացը բոլ է:

— Հավատո՞ւմ եք,— տխուր քմծիծաղեց երիտասարդը:— Ինչո՞ւ որբանոց չեք մտել:

— Ինձ թողնում են, բայց ընկերոջս չէ, ասում են՝ ռուս է...— Գլուխը քարշ արած թախծոտ աչքերը Իվանին ուղղելով, արդարացավ Վանիկը:

— Ռո՞ւս է,— Իվանի փաղախանման, շիկակարմիր գանգուրները շոյելով զարմացավ երիտասարդը:

Պատասխանի փոխարեն Իվանը գլխով արեց:

— Օ՜, ուրեմն հայերեն գիտե՞ս,— ժպտալով հարցրեց երիտասարդը՝ փորձելով նայել Իվանի կլոր, կապույտ աչքերի մեջ:

— Ես եմ սովորեցրել, քեռի՛. նա էլ ինձ՝ ռուսերեն,— կրկնակի ձայնով վրա բերեց Վանիկը:

— Հիանալի,— ասաց երիտասարդը,— և լավ ես անում, որ ընկերոջդ չես լքում: Դե, իհարկե, քաղցած կլինեք,— ավելացրեց նա ոտքի ելնելով:

Նրանք երկուսն էլ համոզմունքով կախեցին գլուխները:

# ԻՄ ՀԱՅԱՍՏԱՆ

*ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ*



Ցնծություն է, խինդ անսահման,
Իմ հին, իմ նոր Հայաստանում.
Բնությունն էլ մարդկանց նման
Տեսեք ո՜նց է ուրախանում:
Սևանի խինդը ջրերին՝
Հրազդանն է երգում ուրախ,
Ձայնակցում են հեռուներից
Արաքս, Դեբեդ, Ողջի, Քասախ:
Ծափ է տալիս Որոտանը.
— Կեցցե՛ ծաղկած Հայաստանը:

Կռունկները երա՜մ-երա՜մ
Խինդ են տանում երկրե-երկիր,
Հայոց ժպիտը խառնելով
Իրենց մեղմիկ, անուշ երգին:
— Հայրենիքի խինդը տանենք
Եղբայրներին դեռ տարագիր,—
Ձայն է տալիս կռունկներին
Օդում թռչող մի արագիլ:—

Կանչենք, որ գան, ապրեն նրանք
Հայրենական ջերմ հարկի տակ:



Անտառներն են ոսկեզօծվել,
Զուգվել աշնան գույներով պերճ,
Ու դրոշներ լինեն ասես
Այդ տոնական շորերի մեջ:
Պար է բռնել այսօր անգամ
Լեռնապարը իմ հայկական:
— Շնորհավո՜ր հիսուն տարիդ,
Սովետակա՜ն իմ Հայաստան:

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*



Քիչ հետո, թեյի սեղանի շուրջ, նրանք արդեն մեկը մյուսի բերնից խոսքը խլելով, պատմում էին իրենց կարճ կյանքի պատմությունները: Եվ երիտասարդը լսում էր նրանց ու անընդհատ սիրտ տալիս.

— Լավ կլինի, ա՜յ, կտեսնեք, որ շուտով ամեն ինչ լավ կլինի... Քնելու տեղ էլ կունենանք, դպրոց էլ կգնանք... Հո միշտ այսպես չի մնալու:

Գիշերեցին գրասենյակում՝ երիտասարդի մոտ, իսկ առավոտյան նրա դեսից ու դենից գտած թեկուզ և խոշոր ու հնամաշ հագուստներով մի քիչ շենք ու շնորհքի եկան և հենց նույն օրվանից էլ սկսեցին օգնել կայարանում վինամթերք ու պարեն բարձող ու բեռնաթափող հաշմանդամ վինվորներին:

Եվ այդպես անցան օրեր ու ամիսներ: Ու նրանք գիշերում էին հենց այդ երիտասարդի մոտ: Եվ ամեն երեկո, մինչև ուշ գիշեր, երիտասարդը պատմում էր նրանց գալիք նոր օրերի մասին, Ռուսաստանում հաղթանակած հեղափոխության մասին: Եվ այնպես եղավ,— ուրիշ ինչպե՞ս լիներ,— որ [illegible] ու Իվանը կայարանի այդ փոքրիկ մշակները, դարձան փոքրիկ հեղափոխականներ, գաղտնի հրահանգներ ու ծանրոցներ փոխադրող փոքրիկ սուրհանդակներ:

Ո՞վ կարող էր կասկածել նրանց: Ուրախ և հույսերով էր անցնում ժամանակը:

Բայց մի օր ասես ժամանակը կանգ առավ:

— Ես պիտի հեռանամ այստեղից, տղանե՛ր,— ասաց նրանց երիտասարդ ելկաթուղայինը:— Ստիպված եմ... Բայց շուտով, շատ շուտով կգանք... Օ՜, այդ չեղավ... ժպտացե՛ք, ա՜յ այդպես, այդպես էլ շարունակեք, և իմացեք, որ մեծ՝ շա՜տ մեծ և սուրբ գործի եք ծառայում:

Այդ գիշեր նրանք կամացուկ երգեցին «Վարշավյանկա»-ն: Բայց, չգիտես ինչու, այս անգամ Իվանի աչքերից արցունքներ էին գլորվում: Երևի նա նորից հիշել էր իր հայրիկին:











Հողմը շառաչում էր ամբողջ գիշերը: Գնացքն ընթանում էր հողմին հանդիման:

Նրանք մեկը մեկի տված, պառկած էին ցրտից կարծրացած բրեզենտի տակ ճռճռացող, փինամթերքով լի արկղերի վրա և անհամբեր սպասում էին լուսաբացին:

Այսպես ցուրտ ու մռայլ էր 1920 թվականի նոյեմբերը Շիրակի դաշտում: Ձյան բարակ շերտը արդեն բռնել էր ձոր ու ձորան, և թվում էր, որ գիշերը վերջ չէր ունենալու: Շաքարի դատարկ տոպրակները, որ նրանք քաշել էին իրենց վրա՝ ամենևին էլ վերմակներ չէին:

Բուքը ոռնում էր, բուքը գալարվում... Նրանք գիտեին, որ իրենց վաղուց հետևում են, և հպարտ էին, որ շտապ, կարևոր հրահանգներ են տանում Ալեքպոլի ընդհատակին:

Այդ պահ, հանկարծ, Անի կայարանից հետո, ինչ-որ խուլ շարժում անցավ վագոնից-վագոն: Նրանք իմացան, որ իրենց են փնտրում: Նրանք արդեն գիտեին, որ իրենց վաղուց են փնտրում: Գնացքը սլանում էր ամբողջ արագությամբ, խուզարկուներն անցնում էին վագոնից-վագոն, տանիքից տանիք:

...Բուքը լալիս էր, բուքը հեկեկում, երբ ճակատագրական մի սև վայրկյանում, անուամենայնիվ, չնկատվելով, սակայն մազապուրծ, գնացքի ահռելի սլացքի պահին նրանք նետվեցին խուլ խավարի մեջ...

*

* *

Գնացքը վաղուց փնչում էր հեռվում, գնացքը չկար, հողմը լռել էր, բուքը հանդարտվել, երբ մի դարավանդի տակ ընկած Վանիկը բացեց աչքերը: Հետո նա երկար դեսուդեն սողալով, ձյան սառած շերտով ծածկված մացառներում գտավ Իվանին:

Ընկած էր Իվանը Շիրակի դաշտում, կապույտ աչքերը հավիտյան փակած, այն բարի, ժպտուն, անմեղ աչքերը, որոնք մի օր այնպես միամիտ, խորունկ մանկական հավատքով նայում

# Չարենցի պոեմի հերոսները

ԳՐԻԳՈՐ ՀԱԿՈԲՅԱՆ

Իմ հիշողության մեջ ընդմիշտ կմնա 1936 թվականի ամռան այն երեկոն, երբ Ծաղկաձորում հանգստացող Եղիշե Չարենցը հյուր եկավ մեզ մոտ՝ պիոներական ճամբար։

Զրույցի ընթացքում, երբ մեր մեջ ստեղծվեց ջերմ, բարեկամական մթնոլորտ, պիոներներից մեկը հարցրեց.

— Իսկ դուք, ընկե՛ր Չարենց, ի՞նչ նոր գործ եք գրել կամ գրում եք մեզ համար։

Մինչև այդ մանուկների հետ մանկացած և այնպես զվարճախոս դարձած բանաստեղծը լրջացավ ու մի փոքր էլ մռայլվեց։

Բոլորը նայեցին նրան և նրա դեմքի վրա կատարված այդ փոփոխությունը նկատելով հանդերձ, սպասեցին պատասխանի։

— Իմ սիրելի պատանի բարեկամներ,— ասաց նա,— դուք լիակատար իրավունք ունեք ինձնից դժգոհելու և նույնիսկ ինձ ձեզ մոտ հյուր չընդունելու, քանի որ ես ձեզ համար շատ քիչ բան եմ գրել։ Սակայն ձեր առջև ես ինձ թերևս այնպես հանցավոր չզգայի, եթե գրելու նյութ չունենայի։ Բայց բանն այն է, որ այդպիսի նյութ կա և այն էլ չափազանց հուզիչ։ Ամեն անգամ, երբ ես որոշել եմ ձեռնամուխ լինել այդ գործին, ինձ թվացել է, թե դեռ վաղ է, որ դեռ էլի պիտի սպասել, որ իմ մտքում գրական հերոսները ավելի բյուրեղանան և գործն ավելի լավ ստացվի։ Եվ այդպես շարունակ հետաձգելով ապագային, ես ինձ դրել եմ մեծ պարտքի տակ։ Ճիշտն ասած, այդ նյութի մի մասը, որ ձեզ քիչ է վերաբերում, ես արդեն գրել եմ և վաղուց արդեն տպագրվել է։

— Ո՞րն է,— հարցրեցին պիոներներից մի քանիսը։

— «Իմ ընկեր Լիպոն»,— պատասխանեց Չարենցը։

— Մանկությունս հիշելիս սիր-
տըս դառնում է գինով.
Ես մի ընկեր ունեի Լիպո ա-
նունով,

Այս ու այն կողմից լսվեցին պիոներների ուրախ ձայները։

— Այո՛։ Գրածս մասը այս իրական բալլադն է, որը թերևս քիչ է վերաբերվում ձեզ։ Բայց այն, ինչ այդ նույն հերոսապատումից չեմ գրել և նոր պիտի գրեմ, հատկապես ձեզ է վերաբերում, քանի որ այդ նոր պոեմի կամ բալլադի հերոսները ձեր հասակակից քաջազուն պատանիներ են, իսկական հայ գավրոշներ։

— Իսկ չի՞ կարելի, որ մինչև գրելը, այդ պատմեք մեզ,— խնդրեցին պիոներները։

Չարենցը մի պահ լռեց, աչքերը կկոցեց և ապա ուրախացած պատասխանեց.

— Ինչո՞ւ չէ։ Դա շատ խելացի առաջարկություն է և ամենից առաջ ինձ համար է օգտակար, քանի որ վաղուց տեղի ունեցած պատմությունը նորից կվերականգնըվի իմ հիշողության մեջ, ես նորից ինձ կզգամ իրական իմ հերոսների շրջանում և, որ ամենակարևորն է, ձեր հանդեպ ունե-

---

էին հայոց մթնած երկնքին, երբ Վանիկը երգում էր հայ որբուկների երգը արցունքալի.

— Արև՛, արև՛, դո՛ւրս արի,
Աչքդ-ունքդ ինձ ցո՛ւյց տուր...

Եվ արևը ելավ, նա չէր կարող էլ ուշանալ։

Նա իր ոսկե շողերը սփռեց Հայաստան աշխարհի վրա մի քանի օր հետո՝ 1920 թվականի նոյեմբերի 29-ին, երբ ապստամբ 11-րդ բանակի առաջին գումարտակը մտավ Իջևան։

Իսկ դեկտեմբերի 4-ին կարմիր հեծյալները Քանաքեռի բարձունքից իջան Երևան։

Նրանք սրածայր կոմունարկաներ ունեին, կոմունարկաների վրա՝ կարմրավառ աստղեր, և երգում էին հեղափոխական երգեր։

Նրանց մեջ էր և երիտասարդ երկաթուղայինը։ Նա ճերմակ փափախով էր, կարմիր ժապավենով, փամփշտակալները՝ աջից ու ձախից, և մորուքով էր։

Ահա թե ինչու ողջունելու ելած ժողովրդի մեջ գտնվող Վանիկը չճանաչեց նրան։ Բայց երկաթուղայինը իսկույն ճանաչեց, տվեց անունը, և ուրախության արցունքն աչքերին Վանիկը փարվեց նրա վրնջացող ձիու լանջին։

Իսկ երեկոյան... երբ Երևանը տոնում էր պատմական այդ ոսկե երեկոն, երբ նրանք նորից հանդիպեցին իրար, այլևս երբեք չբաժանվելու համար, երիտասարդի առաջին հարցն եղավ.

— Իսկ ո՞ւր է Իվանը։

Վանիկի աչքերը արցունքոտվեցին...

— Ես քեզ համար էլ... նրա համար էլ նվերներ եմ բերել...— փշրված սրտով ասաց երիտասարդը։

Պետք էր արտասվել, հիշելով սակայն, որ ազատությունը գալիս է միայն կռիվների գնով։ Իվանն էլ այդպես, ինչպես բյուրավոր քաջերը հայոց, ինչպես Վանիկի հայրը՝ Սարդարապատում, ինչպես Իվանի հայրը՝ Վանա դաշտերում, իր արյունն էր թափել Հայաստանի սուրբ հողի վրա, որպեսզի ելներ ու հավետ շողար անմար Արևը Հեղափոխության։

ցածս պարտքը փոքր-ինչ կթեթևացնեմ:

Ամենքը աչքերը կրակ դարձրած և ականջները սրած, սպասեցին Չարենցի պատմությանը:

— Այն, ինչ պիտի պատմեմ հիմա, պատահել է Հայաստանում քաղաքացիական կռիվների ժամանակ՝ Երևանի ազատագրության համար մղվող պայքարում,— այսպես սկսեց Չարենցն իր պատմությունը:— Մեր զորամասերը խրամատավորվել էին Ղամարլուի (այժմ՝ Արտաշատի) շրջանի Նախլին Իմանշալու (այժմ՝ Մխչյան) գյուղի մոտակայքում: Իմ կողքին կռվում էր Դավիթ անունով մի մարդ, որ մոտակա գյուղերից էր: Դավիթ, ի՞նչ Դավիթ: Իսկը մի նոր Սասունցի Դավիթ: Եվ, իրոք, ինքն էլ բնիկ սասունցի էր, որ գաղթելով իր ծննդավայրից, եկել, բնակություն էր հաստատել այդտեղ:

Դավիթը ուներ երկվորյակ որդիներ, մեկի անունը՝ Բագրատ, մյուսինը՝ Զոհրապ, որոնց նա կոչում էր Բագո և Զորո: Նրանք, որ հազիվ 14—15 տարեկան լինեին, հոր նման թիկնեղ ու բարձրահասակ էին և ոչ մի ահ ու երկյուղ չունեին: Նրանք հաճախ էին գալիս մեր խրամատները, մեզ համար ծխախոտ և ուտելիք էին բերում: Ուտելիքն էլ ի՞նչ ուտելիք: Հաց չկար: Այդ գյուղերի մարդիկ ապրում էին չորացրած մրգերով, սիսեռի ու կանեփի աղանձով և խաշած բանջարով:

Մի օր էլ մեզ հրաման տրվեց, որ հաջորդ լուսաբացին պետք է անցնենք վճռական գրոհի և դաշնակցականներից գրավենք Երևանը: Բագոն և Զորոն իմանալով մեր գրոհի մասին, վաղ լուսաբացին եկան մեզ տեսության: Հայրը գրկեց նրանց, համբուրեց ու ասաց.

— Տղե՛րք ջան, հիմա մեծ կռիվ է ընելու: Դե, կռվում, ոնց որ ասում են, փլավ չեն բաժանում: Ո՞վ իմանա, թե ինչ կպատահի... հասկանում եք էլի՞: Խելոք կըլնեք, ձեր մորը կլսեք և տունը պատվով, նամուսով յոլա կտանեք:

— Մենք էլ ենք ուզում քեզ հետ գալ,— ասացին Բագոն ու Զորոն թախանձանքով:

Լսելով Զորոյի ու Բագոյի այդ անսպասելի խնդրանքը, ինձ թըվում էր, թե Դավիթը այնպես խիստ կսաստի որդիներին, որ նրանք, առանց ձայն-ծպտուն հանելու, իսկույն տուն կվերադառնան:

Բայց Դավիթը այդ անելու փոխարեն, դարձավ ինձ.

— Դե՛, ընկե՛ր Չարենց, ես չեմ ասում, դու ասա, ես իմ էս ալան-թալանների խաթրը ո՞նց կոտրեմ:

— Ինչպե՞ս թե,— զարմացա ես:— Մի՞թե այսպիսի հարցում երեխաների խաթրին են նայում:

— Ախր, ընկե՛ր Չարենց, մենք ի՞նչ երեխա,— աղաչական տոնով ասացին Բագոն ու Զորոն,— իսկ դու բա էն աստծու կրակ պատերազմին որ մասնակցում էիր, մեզանից շա՞տ մեծ էիր:

— Իհարկե մեծ էի: Ես արդեն տասնութ տարեկան էի:

— Պա՜հ: Ինչ արեց-չարեց երեք տարի՞ն արեց,— արհամարհական խոսեց Դավիթը:

Մեր այս վեճն ու խոսակցությունը երևի դեռ երկար շարունակվեր, եթե այդ պահին մեզ մոտ կուզեկուզ չգար մեր դիվիզիայի կոմիսար Լիպարիտ Մխչյանը: Տեսնելով Բագոյին ու Զորոյին, նա սաստիկ զարմացավ:

— Վահ: Դուք ի՞նչ գործ ունեք այստեղ: Դե, շուտ տո՛ւն...

Տղաներն, առանց ծպտուն հանելու, կուզեկուզ ետ գնացին:

— Եղի՛շ,— ասաց Մխչյանն ինձ,— քանի ուշ չէ, դու էլ վեր կաց ու... գնա:

— Ո՞ւր,— զարմացա ես:

— Թիկունք:

— Ինչո՞ւ:

— Հիմա գրոհը կսկսվի և ո՞վ գիտե...

— Ոչ մի դեպքում: Բանաստեղծն էլ մարդ ու քաղաքացի է և նա էլ, անհրաժեշտության դեպքում, պարտավոր է կյանքը զոհաբերել հանուն հայրենիքի,— ասացի ես:

— Դե, ինչպես ասում են, քո մեղքը՝ քո վզին,— ասաց Մըխչյանը:

Քիչ անց, Լիպարիտ Մխչյանի հրամանով, սկսվեց գրոհը: Ուռա գոռալով, առյուծի նման առաջինը նա նետվեց դաշնակցականների դիրքերի վրա: Մեկ մարդու նման, նրա ուռային արձագանքելով, ամբողջ դիվիզիան հետևեց նրան: Սարսափահար դաշնակցականները դուրս եկան իրենց խրամատներից և խուճապահար սկսեցին նահանջել: Ժամանակ առ ժամանակ նրանք նոր դիրքեր էին գրավում, կրակում մեզ վրա և նորից նահանջում: Մեկ էլ նկատե-

## ԱՌԱՎՈՏ Է

*ՎԼԱԴԻՄԻՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ*

Առավոտ է Ծաղկաձորում,
Առավոտ է պղնձալույս,
Շեփորներն են հնչում, կանչում,
Մուշ-մուշ քնած մանուկներին:
Եվ անտառն է լցվում խինդով,
Եվ աղմուկն է իջնում ձորափ,
Մանուկների ծիծաղ-կանչով,
Առավոտն է թնդում անափ:
Լույսի շքերթ ու լույսի ;աց,
Դրոշների ալ բոցի մեջ,
Զրնգում է փառքով ընկած
Հերոսների երգը անվերջ:
Առավոտ է Ծաղկաձորում,
Առավոտ է պղնձալույս...

գի, որ Լիպարիտ Մխչյանը երերաց ու ընկավ: Ես իսկույն վազեցի դեպի նա: Բայց ինձնից առաջ նրան օգնության հասան նաև ուրիշները, որոնց թվում նաև Զորոն ու Բագոն, որոնք ձեռներին մարտական հրացաններ ունեին և կռվում էին առաջին շարքերում:

Լիպարիտ Մխչյանին հանձնելով բժիշկների ու բուժակների խնամքին, մենք շարունակեցինք գրոհը: Նորագավթի մոտերքը ես նորից հանդիպեցի Զորոյին ու Բագոյին: Նրանք իրենց քաջությամբ ոչ մեկին, անգամ իրենց հորը չէին զիջում:

Այնուհետև Բագոյին ու Զորոյին տեսա Երևանը գրավելիս: Նրանք ոչ թե երեկվա իմ տեսած պատանիներն էին, այլ կրակ կտրած կորյուններ: Երևան մտնողների առաջին շարքերում էին գտնըվում նրանք: Հակառակորդը լրացուցիչ ուժեր ստանալով, անցավ կատաղի հակահարձակման: Մերոնցից շատերն ընկան կամ վիրավորվեցին: Վիրավորվածների թվում էին նաև Բագոն ու Զորոն: Նրանց անմիջապես տեղափոխեցին հիվանդանոց:

Երևանը գրավելուց հետո, ես հաճախ էի այցելում հիվանդանոց և տեսնում նրանց: Մի-երկու ամսից հետո նրանք, լիովին ապաքինված, դուրս գրվեցին հիվանդանոցից և տուն գնացին:

— Բագոյի և Զորոյի այդ քաջագործությունները այնպես ամուր են տպավորվել իմ մեջ,— ասաց Չարենցը վերջում,— որ ես նրանց մասին անպատճառ մի մանկական պոեմ պիտի գրեմ: Եթե որևէ բան չպատահի, մեկ-երկու տարուց դուք այն կունենաք ձեր գրադարաններում: Ճիշտ է, ես շատ եմ ուշացրել, բայց, ինչպես ասում են, ուշ լինի՝ նուշ լինի...

Ինչ լա՜վ է, որ նա իր գրելիք այդ պոեմի բովանդակությունը պատմեց մեզ, որով և մասամբ այն փրկվեց կորստից...

# ՆԱ ԿՈՒՅՐԻՆ ՊԱՐԳԵՎՈՒՄ Է ՏԵՍՆԵԼՈՒ ԿԱՐՈՂՈՒԹՅՈՒՆ

ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ



*Մեր սիրելի Սովետական Հայաստանը բոլորեց իր գոյության հիսնամյակը: Որ այս հիսնամյակը մեր հայրենիքի վերածննդի հիսնամյակն է և որ նրա ծնունդը հաշվվում է շատ հին ժամանակներից՝ դարեր ու հազարամյակներ առաջ,— այդ բոլորս գիտենք: Իսկ որ մեր Հայաստանը՝ իր փոքրիկ հողակտորից բացի, ձըգվում է շատ ու շատ հեռու, հասնում մինչև Մերձավոր Արևելք, Եվրոպա, Ամերիկա ու նույնիսկ Ավստրալիա,— սա շատերին պիտի կարմանալի թվա: Դե, ուրեմն, բացատրեմ ասածս:*

*1915 թվականից հետո, երբ Թուրքիայի այն ժամանակվա կառավարողները հայ բնակչությանը ջարդելով ու բռնադատելով քշեցին իրենց պապենական հողերից և ցիրուցան արեցին մեր ժողովրդի արևմտահայ հատվածը, այդ թվերից սկսած, հնամենի հայկական լեզվում կազմվեց մի նոր բառ՝ «սփյուռք», որը նշանակում է աշխարհով մեկ սփռված հայություն: Օտար ափերում հանգրվանելու առաջին իսկ օրից սփյուռքի մեր հայրենակիցները մեծ ճիգերով ու կոհողությամբ կազմակերպեցին իրենց ազգային կյանքը, հիմնեցին բարեգործական, մշակութային, մարզական կազմակերպություններ, և առաջին հերթին՝ դպրոցներ, որպեսզի հայ երեխաներին սովորեցնեն մայրենի լեզու, մայրենի պատմություն, կապված պահեն իրենց մայր ժողովրդին, իրենց արմատներին: Սակայն այս բոլոր ջանքերը կտային շատ նվազ արդյունքներ, եթե աշխարհում նոյեմբերյան մի առավոտ չստեղծվեր Սովետական Հայաստանը և ժողովուրդների եղբայրական ընտանիքում կռանալով ու ամրանալով, չդառնար հույս ու խարիսխ իր աշխարհասփյուռ զավակների համար:*

*...Բեյրութի մարզադաշտում ֆուտբոլային խաղ է: Լիբանանյան թիմի հետ հանդիպում է ունենում Սովետական Հայաստանի ֆուտբոլային թիմը: Մարզադաշտը ճռնչում է մարդկանցից: Մեծ մասամբ հայեր են ու նրանց մեջ մի սպիտակահեր ծերունի՝ բոլորովին կույր: Կողքի երիտասարդներից մեկը դիմում է նրան. «Ա՛յ հայրիկ, դո՞ւք ինչու եք եկել»: Ծերունին չի պատասխանում: Միայն այն ժամանակ, երբ խաղի ավարտից հետո նվագախումբը հնչեցնում է հյուրերի՝ Սովետական Հայաստանի հիմնը և ստադիոնը հանդիսավոր ու շուն-*



*չը պահած ոտքի է կանգնում, ծերունին դառնում է երիտասարդին և դողդոջ հուզումով ասում. «Իշտե ասոր համար եկա»...*

*Հիշում եմ անմոռանալի մի հանդիպում դեպի Մերձավոր Արևելքի երկրները՝ Լիբանան, Սիրիա, Եգիպտոս կատարած իմ ուղևորությունից: Բեյրութի Չար Չապուկ կոչվող վայրում եմ, փայտ ու թիթեղից իրար բերած խարխուլ տնակներից ու փողոցի հավակնություն ունեցող նեղլիկ խոռոչներից կազմված հայկական աշխատավորական թաղամասում: Թաղի բնակիչներով շրջապատված՝ այցելում եմ նրանց տները: Մտանք հողաշեն մի խրճիթ: Տանտերը՝ սևագործ բանվոր, չորս երեխա ուներ, որոնցից ամենափոքրը դեռ ծվարել էր մոր գրկում: Ահա առաջ է գալիս 6-7 տարեկան սևուլիկ մի աղջիկ՝ փոքրիկ Մաքրուհին, և սկըսում արտասանել.*

*Ծովուն վրա նավակ մը կա,*
*Կարապի պես կերթա-կուգա,*
*Սիրո՜ւն նավակ, եկո՜ւր վիս առ,*
*Իմ հայրենի աշխարհս տար...*

*Մինչև հիմա էլ իմ դեմ են աղջկա վառվռուն, ներքին կրակով բռնկված աչքերը՝ լցված վստահ մի հավատով, թե ուր որ է կերևա սպասված նավակը և իրեն, իր քույրերին ու եղբայրներին, բոլորին, բոլորին կտանի ցանկալի ափը, հայրենի Հայաստանը:*

*Եվ հայրենի Հայաստանը իր հեռու-հեռուներից հասնում է իր զավակներին, պարզում նրանց օգնական ձեռքը: Ժամեր կարելի է պատմել, թե ինչ է արել սովետական կառավարությունը արտասահմանի հայության համար՝ սկսած կանգվածային հայրենադարձությունից մինչև մշակութային բազմատեսակ կապերը: Շատ բան է արվում նաև երեխաների համար: Հայկական դպրոցներ ուղարկվում են Հայաստանում հրատարակված դասագրքեր, գրադարաններ, դպրոցական լաբորատորիաներ, երաժշտական գործիքներ, երգապնակներ, թերթեր: Ամեն ամառ աշխարհի տարբեր ծայրերից մեզ մոտ են գալիս հայ երեխաներ և իրենց արձակուրդը անց են կացնում Հայաստանի պիոներական ճամբարներում:*

*Մի անգամ ամռան սկզբներին, երբ հյուր էի Հանքավանի պիոներներին, մտա այն սենյակը, որտեղ տեղավորված էին սփյուռքի երեխաները: Իմ դեմ ասես մեկեն փռվեց աշխարհի ատլասը. էլ ինչ երկրների գույներ ասես, որ չկային այդ ատլասի վրա, եկել էին Լիբանանից, Սիրիայից, Հորդանանից, Ավստրալիայից, Ֆրանսիայից, Ամերիկայից: Նրանց մեջ առանձնապես աչքի էր ընկնում չափազանց շարժուն, կրակոտ դեմքով, հազիվ ութ տարեկան գիրուկ մի տղա՝ Պարույր անունով: Իր երկու քիչ ավելի մեծ ընկերների հետ, առանց ուղեկցի, առանց լեզուներ գիտենալու, նրանք ճամփա էին ընկել հեռավոր Ադիս-Աբեբայից, մի շարք ուղերթեր փոխելով, վերջապես հասել էին Հայաստան:*

*— Իսկ ձեր ծնողնե՞րը, ինչպե՞ս չեն վախեցել ձեզ մենակ ուղարկելու,— զարմանում է ներկա գտնվող միամիտ մի մարդ:*

*— Իսկ ի՞նչ կար վախենալու,— համոզված վրա է բերում տղան,— չէ՞ որ հայրենիք կուգայինք...*

*Ահա, իմ թանկագի՛ն պատանի բարեկամներ, ի՛նչ է նշանակում հայրենիքը մարդու համար: Նա ուժ է տալիս կտրելու հազարավոր կիլոմետրեր, ծովեր և օվկիանոսներ, հաղթահարելու անթիվ դժվարություններ: Նա խոնավ ու մութ հյուղում ապրողին ներշնչում է երազանք ու լավագույն հավատ, նա կույրին պարգևում է տեսնելու երանությունը: Սերը դեպի հայրենիքը, մարդկային հոգին հարստացնող ամենամեծ զգացումներից է:*

*Ուրեմն, եկեք ավելի բուռն ու նվիրված սիրենք մեր մայր հայրենիքը: Սիրենք ոչ միայն խոսքով, այլև՝ գործով: Ամեն մեկս՝ մեզ բաժին ընկած պարտականության ազնիվ կատարումով է՛լ ավելի շենացնենք ու զորացնենք մեր երկիրը և խորապես գիտակցենք, որ յուրաքանչյուրիս փոքրիկ ջանքն էլ կօգնի, որպեսզի մեր Հայաստանը ավելի ամրանա ու նրա համբավը գնա օտար հողերում թափառող իր զավակներին զորավիգ լինի, ուժ տա և ներշնչի հպարտ ու ինքնավայել ապրելու Բեյրութի կույր ծերուկին, Չար-Չապուկ թաղի պստլիկ Մաքրուհուն, Ադիս-Աբեբայի թմբլիկ ու կայտառ Պարույրին, մեր բոլոր-բոլոր հարազատներին:*

Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ



ՆԱՆԱԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

# ԿԱ ՄԻ ԲԱՐՁՐԻԿ ՀԱՅԱՍՏԱՆ

Կար երկնամոտ մի երկիր,
Բարձր ու ամպոտ մի երկիր՝
Իր ձորերով անհատակ,
Իր լեռներով ձյունաթագ:
Որդիք ուներ քաջացեղ,
Բոցամորուս, աչագեղ...
Խաժաչ Հայկի հայրենիք,
Բոց Վահագնի հայրենիք...
Կար մի ածու Հայաստան,
Խորենացու Հայաստան:
Գրչի, խոփի հայրենիք,
Սուրբ Մեսրոպի հայրենիք:
Կար Հայաստան, և կային
Երազանքներ մարդկային:
Կար Հայաստան, և միշտ կար
Վիշտը՝ որպես մամռած քար:
Կողմեր կային հողմածին,
Հողմեր կային խելագար,
Խառնում էին մեր հացին
Մեր արցունքը քանի դար:
Կար Հայաստան և չկար...
Դեռ նոր, դեռ նոր պիտի գար
Մեր փրկության այգը մեծ...
Նոյեմբերով նա ծագեց:
Եղավ շռայլ այգաբաց,
Ու բացվեցին քարկապված
Եվ խճճված և ոլոր
Հանգույցները մեր բոլոր:
Կա մի բարձրիկ Հայաստան,
Մի երկնաձիգ Հայաստան,
Լեգենդի պես թևավոր՝
Մի սլացիկ Հայաստան:
Նա արտասուք է ցանել
Լույս հատիկներ է հնձում,
Մորմոք ու սուգ է ցանել,
Մարգարիտներ է հնձում:
Ավերակված իր հողին
Նոր երազներ է ցանում,
Կա մի հրաշք հայրենիք,
Հավերժ փրկված մի անուն:
Տղա՛ս, նրա գարունով
Ցնծա ինձ հետ ու երգի՛ր.
— Կա՛ Հայաստան անունով
Հազարամյա մի երկիր:

# ԱՇՈՒՆ

Եկավ, երգով եկավ,
Գիտե՞ք, թե ով եկավ.
Ոսկե աշուն եկավ,
Քամու թևով եկավ:

Բերեց, նորից բերեց,
Գիտե՞ք, թե ինչ բերեց.
Արևի պես ժպտուն
Դեղձ ու նարինջ բերեց:

Բաշխեց, խնդում բաշխեց,
Գիտե՞ք, թե ում բաշխեց.
Մանուկներին բոլոր
Ուրախություն բաշխեց:

Գնաց, երգով գնաց,
Պաղ երկնքով գնաց,
Լի գրպանով եկավ,
Դատարկ ձեռքով գնաց:

Ծիլը արտում թողեց,
Բերքը մարդուն թողեց,
Ինքը քնեց, խաղաղ,
Կյանքը արթուն թողեց:

Նկ. ԱՐՄԻՆԵ ԿԱԼԵՆՑԻ



# ԵՐԵՔ ՍԵՐՈՒՆԴ, ԵՐԵՔ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

Լենինականի Սևյան փողոցի վրա է ապրում Մայիսյան ապստամբության մասնակից «Վարդան զորավար» զրահագնացքի մեքենավար Աբգար Միքայելյանը: Աբգար պապը հիմա ութսունհինգ տարեկան է, ճերմակ մորուքով, բայց դեռ առույգ է ու զվարթ: Նա №14 դպրոցի պիոներական դրուժինայի պատվավոր պիոներն է: Շատ է ուրախանում, երբ պիոներները հյուր են գալիս իրեն.

— Հը՞, արծվիկնե՛ր, ի՞նչ կա:

— Դպրոցում Սովետական Հայաստանի 50-ամյակին նվիրված ցուցահանդես ենք կազմակերպել, ժապավենը Դուք եք կտրելու...

Աբգար պապը կապում է կարմիր վզկապը ու նրանց հետ փողոց իջնում, իր հետ տանելով նաև թոռնիկներին՝ յոթերորդ դասարանցի Միքայելին և երկրորդ դասարանցի Կարենին:

Նա 1905-ին, դեռևս երիտասարդ, Թիֆլիսի կայարանում մեքենավարի օգնական էր: Երբ դեպոն ապստամբեց հին կարգերի դեմ, շատերի թվում նրան էլ ձերբակալեցին: Հեղափոխության զինվորին չընկճեցին բանտն ու հալածանքները: Տարիներ անց, գնացքը նրան մեկ ուրիշ կայարան բերեց, որի ճակատին գրված էր. «Ալեքսանդրապոլ»: Հենց այստեղ էլ ծանոթացավ Մայիսյան ապստամբության ղեկավարի՝ «Վարդան զորավար» զրահագնացքի հրամանատար Սարգիս Մուսայելյանի հետ:

— Դուք հին զինվոր եք,— ասաց նա,— և այսօրվանից պետք է զինվորագրվեք «Վարդան զորավարին»:

1920 թվականի մայիսի 1-ին, «Վարդան զորավարի» ազդանշանն արձագանք տվեց ողջ Հայաստան աշխարհում: Աբգար պապը զրահագնացքը գրոհի տարավ թշնամու դեմ: Մի քանի ամիս անց, «Վարդան զորավարը» հյուսիսից Հայաստան բերեց ազատարար 11-րդ բանակի զորամասերին: Քանի՜ անգամ է նա այդ մասին պատմել երեխաներին, հետո հուզմունքով ավելացրել.

— Ձեր այսօրվա զուլալ, երջանիկ մանկության համար էր հնչում «Վարդան զորավարի» ազդանշանը, ի՛մ բալիկներ:

Երբ նա կտրեց ցուցահանդեսի ալ ժապավենը, բոլորը հրճվանքով ծափահարեցին: Իսկ հետո ուղեկցեցին նրան սրահից-սրահ:

— Աբգա՛ր պապ, ահա և ձեր «Վարդան զորավարը»:

Ծերունին հուզմունքով դիտում է զրահագնացքի

## Ա Ն Տ Ա Ռ Ն Ե Ր

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ*

Աշնան թևի տակ կանգնել եք ուրախ,
Անտառնե՛ր վայրի, անտառնե՛ր դեղին,
Բարեշունչ քամով առավոտը պաղ
Ձեր գանձերը բյուր թափում է հողին:

Մի ոտքով եկել հասել եք գետափ,
Մյուսով կանգնել լեռների ուսին,
Լցված ձեր աշնան խոհուն մեղմությամբ
Ես մտորում եմ ահա ձեր մասին:

Երգում է ձեր մեջ լռությունն անգամ
Նազանքով վայրի, գույնով ոսկեհեր,
Դուք գանձարանն եք իմ մայր բնության
Եվ հավետ ծերուկ ու հավետ ջահել:

Խաղաղություն եք մաղթում անդադար
Եվ իրար սնում հրաշքով անտես,
Եվ հեքիաթներ եք պատմում դարեդար,
Դուք՝ աղբյուրներին, աղբյուրները՝ ձեզ:

Ինչ լա՜վ են երգում գետակ ու առու,
Ձեր ոտքերի տակ զրնգում անվերջ,
Թեպետ ապրում եմ ձեզանից հեռու,
Դուք ձեր ձայներով խշշում եք իմ մեջ:

մակետը, հետո հայացքը կանգ է առնում դիմացի պատին փակցված լուսանկարի վրա:

— Սա հո մեր Սերգեյն է,— մանկան պես հրճվում է նա:

— Մե՛ր Սերգեյն է,— նույնպես հրճվում են երեխաները:

Սերգեյ Միքայելյանը՝ Լենինականի դեպոյի հրահանգիչ-մեքենավարը, Աբգար պապի որդին է: Անվանի մեքենավարը արդեն քանի՛ տարի շարունակում է հոր գործը: Սերգեյ Միքայելյանը սոցիալիստական աշխատանքի հերոս է, Սովետական Միության Գերագույն սովետի դեպուտատ: Նրա կրտսեր եղբայրը՝ Ռաֆիկը, պատերազմից չվերադարձավ: Ու դրա համար ավելի ճերմակեցին պապի մազերը: Հայր ու որդի հաճախ են հյուր լինում քաղաքի այս կամ այն դպրոցի պիոներներին, վարդարում նրանց ուրախ հանդեսները, հավաքույթները, ներկա լինում Աստղի հրապարակի հավերժական կրակի մոտ անցկացվող հանդիսավոր տողաններին: Այդ հավերժական կրակը Լենինգրադի Մարսյան դաշտից ինքը՝ Սերգեյ Միքայելյանն է գնացքով բերել: Հայր ու որդի՝ հեղափոխության կինվորն ու աշխատանքի հերոսը, երկու սերնդի պայծառ ներկայացուցիչներ, կանգնում են հավերժական կրակի մոտ, երեխաների առաջ: Իսկ նրանց կողքին հպարտությամբ աչքերն են թարթում Կարենն ու Միքայելը՝ այդ նշանավոր ընտանիքի երրորդ սերնդի ներկայացուցիչները:

— Դու նույնպես պետք է գնացք բարձրանաս և շարունակես իմ ու հայրիկիդ ճանապարհը,— Միքայելին է հաճախ դիմում Աբգար պապը,— ինքս էլ կբացեմ սիմաֆորը քո առաջ:

Կմեծանա Կարենը և գուցե ճարտարապետ դառնա: Կմեծանա Միքայելը և գուցե խսկապես պապիկի ու հայրիկի նման մեքենավար դառնա, շարունակի իրենց փառավոր ընտանիքի ավանդույթ դարձած գործը: Իսկ առայժմ նրանք տանը՝ սեղանի վրա պատրաստված երկաթուղային փոքրիկ քաղաքի տիրակալներն են: Հաճախ են դրոշմանիշերի ալբոմները մի կողմ թողած, խաղալիք-գնացքները ձեռքներին, ներս մտնում ճաշասենյակ, կվարթ կանչում:

— Տո՛ւ-տո՛ւ-տո՛ւ, սիմաֆորը բա՛ց արա, պապի՛կ...

— Լսում եմ, բացե՛լ սիմաֆորը,— լուրջ-լուրջ պատվի է առնում սիրելի-սիրելի պապիկը և խոնարհվում սեղանի երկաթուղային քաղաքի վրա,— ճանապարհը բաց է, անցե՛ք, թոռնիկնե՛րս:

Եվ... «Վարդան կորավարի» ծերունազարդ կինվորը, մեղմ ժպտալով, թափահարում է ձեռքը:

ԼՅՈՒԴՎԻԳ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ


Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 11 նոյեմբեր 1970 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
նկ. ՌՈՒԲԵՆ ՂԵՎՈՆԴՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Կ. (գլխ. խմբագրի տեղակալ), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Адрес редакции:
Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15,
Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:

ՎՖ 05789: Պատվեր՝ 1053: Տպաքանակ՝ 64700: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 6/XI 1970 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:
Գինը՝ 10 կ.

